

ISSN 0134—3257

# ՊԻՈՆԵՐ

1983 8

# ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ
# № 8 • 1983

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1923 ԹՎԱԿԱՆԻՑ





Շապիկը՝
ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ

## ԳԵՏԱՔԱՐԵՐ

Գետը ծնվում ու առաջ է վազում,
Կարկաչում, գոչում, առաջ է վազում,
Գետը բնավ էլ նպատակ չունի
Հղկել իր ճամփի քարերը բազում:

Գետը չի խորշում ժայռին բախվելուց,
Անդունդի, կիրճի վրա կախվելուց,
Բայց և քարերի ողորկությունը
Ծնվում է գետին հակառակվելուց...

## ԳԱՐՆԱՆ ԱՅԳԻ

Ծաղկուն ծառեր ու սաղարթներ,
Լուսե մշուշ առավոտի...
Մեկը քեզնից շուտ է զարթնել,
Ոտնահետքեր թողել խոտին:

Ո՞ւր է... Չկա՞... Այս ամենում
Նա ապրել է լոկ մի վայրկյան,
Նույնը ես քեզ եմ կամենում.
Վայրկյանի պես երկա՞ր մի կյանք:

# ԱՄԱՌԸ ԿՈՉՎՈՒՄ Է ՊԻՈ

Ամեն մի կարմիր վզկապավոր առանձին անհամբերությամբ է սպասում պիոներական ամառը: Հանգստանալու, կազդուրվելու, դպրոցում ստացած գիտելիքները կյանքում փորձելու և հարստացնելու, հանրօգուտ գործ կատարելու բազմաթիվ հնարավորություններ ունի տարվա այս գեղեցիկ եղանակը: Եվ որպեսզի յուրաքանչյուր դպրոցականի համար այն անցնի հետաքրքիր ու բովանդակալից, ամռան կազմակերպման հարցերով ամբողջ տարվա ընթացքում զբաղվում են կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները: Նախապես հաշվարկվում է, թե դպրոցականներից քանիսն են հանգստանալու քաղաքամերձ պիոներական ճամբարներում, քանիսը կմնան իրենց բնակավայրերում և այլն, և դրան համապատասխան ստեղծվում է անհրաժեշտ նյութական բազա, ձեռնարկվում են միջոցառումներ, որ բոլոր դպրոցականներն էլ լավ հանգստանան:

Տարեցտարի մեր հանրապետության գեղատեսիլ վայրերում, հանգստյան գոտիներում՝ Ծաղկաձորում, Հանքավանում, Դիլիջանում, Աղվերանում, Խուստուփի լանջերին ու կապուտաչյա Սևանի ափերին կառուցվում, շարք են մտնում քաղաքամերձ նոր պիոներական ճամբարներ: Այս տարի հանրապետությունում գործում են 117 քաղաքամերձ պիոներական ճամբարներ, որտեղ հանգստանում են ավելի քան 40000 պիոներ-դպրոցականներ:

Քիչ չեն նաև այն պիոներները, ովքեր որոշել են ամռանը աշխատել բարձր դասարանցիների հետ կողք-կողքի: Նրանց համար այս տարի հանրապետությունում գործում են 138 աշխատանքի և հանգստի ճամբարներ, 846 աշակերտական արտադրական բրիգադներ, դպրոցական անտառպետություններ և այլ աշխատանքային միավորումներ:

Իսկ ովքեր մնացել են քաղաքում, նրանց համար հանրապետությունում ընթացիկ ամռանը գործում են 156 քաղաքային տիպի պիոներական ճամբարներ, որտեղ հանգստանում են շուրջ 29 հազար պիոներ-դպրոցականներ: Ավելի քան 200 հազար հոգի իրենց հաճելի ժամանցն են անցկացնում մանկական, սպորտային հրապարակներում, արտադպրոցական հիմնարկներում և ըստ բնակության վայրի ակումբներում:

Այս բոլորով հանդերձ ամառային հանգիստը ոչ մեկի համար չպետք է ինքնանպատակ անցնի: Յուրաքանչյուր ամառ ունենում է իր որոշակի խնդիրները, որոնց շուրջը ծավալվում է պիոներական կոլեկտիվներից յուրաքանչյուրի գործունեությունը:

Ընթացիկ ամռանը պիոներները շարունակում են մասնակցել «Մենք ուժեղ ենք լենինյան բարեկամությամբ» նշանաբանով անցկացվող պատանի լենինյանների համամիութենական երթին: Ամենուր պիոներական կյանքը հարստանում է նոր խաղերով, սպորտային մրցումներով ու արշավներով, ռոմանտիկ գործերով: Պատանի լենինյանները ակտիվորեն մասնակցում են աշխատանքային պիոներական գործերի հնգամյակին: Շատ կոլեկտիվներ ունեն իրենց մշտական աշխատանքային տեղամասերը, մասնակցում են ՍՍՀՄ պարենային ծրագրի իրականացմանը, տնտեսվարության և խնայողության համամիութենական արշավին: Ծաղկաձորի «Ակադեմիա», Հանքավանի «Արաքս» պիոներական ճամբարները ստեղծել են իրենց ճագարաբուծական ֆերմաները, «Միածան» ճամբարում կան փաթաթման, Պավլիկ Մորոզովի անվան ճամբարում՝ կարի պիոներական արտադրամասեր, «Նաիրիտ», «Հայկական Արտեկ», «Հասմիկ», «Լուսաբաց» ճամբարներում ավանդույթ է դարձել պիոներական դեսանտների իջեցումը հարևան տնտեսությունների հանրային դաշտերը:

Ամռան ընթացքում պատանի լենինյանները մեծ հնարավորություններ ունեն մասնակցելու կոմունիստական կուսակցության և սովետական ժողովրդի հեղափոխական, մարտական և աշխատանքային փառքի վայրերով համամիութենական արշավին, «Իմ հայրենիքը՝ ՍՍՀՄ» էքսպեդիցիային: Ամենուր ստեղծվում են ամառային էքսկուրսիոն և արշավային երթուղիներ, որոնողական խմբեր, թիմուրական ջոկատներ, պահակակետեր:

# ԵՐԱԿԱՆ

Պիոներական դրուժինաները ու ջոկատները ակտիվորեն մասնակցում են «Սովետական երիտասարդության խաղաղության երթին», «Երեխաները խաղաղություն են ուզում» միջազգային կամպանիային։

Հոկտեմբերիկները շարունակում են «Հոկտեմբերիկները Հոկտեմբերի երկրով» խաղ-ճանապարհորդությունը։

Դե, իհարկե, ամռանը իրենց յուրահատուկ խնդիրներն ունեն պիոներական ակտիվիստները և հատկապես նրանք, ովքեր անցած հաշվետու-ընտրական հավաքույթների ժամանակ առաջին անգամ ընտրվել են պիոներական ինքնավարության օրգաններում։ Նրանք մասնակցում են պիոներական ակտիվի ուսուցման ճամբարների, դպրոցների, սեմինարների աշխատանքներին, սովորում են պիոներական գործ։ Շատ պիոներներ պատրաստվում են դառնալ պիոներ-հրահանգիչներ։

Ահա թե որքան կարևոր գործեր կան անելու ամռան ընթացքում, բայց այն երբևէ հետաքրքիր ու բազմաբովանդակ չի անցնի, եթե պակասի նախաձեռնությունը, ոգևորությունը, ռոմանտիկան, գործնականությունն ու վճռականությունը։ Ուրեմն, ամեն ինչ կախված է յուրաքանչյուր պիոներից։ Եվ դու՛, պատանի բարեկամ, եթե դեռ չունես որոշակի ծրագիր՝ շտապի՛ր, ամմառը չի սպասում։

ԳԱԳԻԿ ՀԱՅՐՈՒՄՅԱՆ

ՀԼԿԵՄ Կենտկոմի դպրոցական երիտասարդության և պիոներների բաժնի վարիչ

ԳՐԻԳՈՐ ՄԱՂՄԱՆՅԱՆ

## ՃԱՄԲԱՐՈՒՄ

Բարձր լեռան լանջին ենք մենք.
Ամպն է մեզ հետ մագլցում վեր։
Մի կողմ՝ ճերմակ մշուշ ու մեգ,
Մի կողմ՝ բացվող անհուն եթեր...

Հորիզոնում մութ ու լուսին՝
Թիթեռներ են շողերն այգի,
Արևն ու մենք լեռան ուսին
Հանդիպում ենք հանկարծակի։

Սարի հովը բերում է մեզ
Զնգուն կարկաչն աղբյուրների,
Արշավի է ելել ասես՝
Քարավանն էլ սեգ լեռների։

Մեզ գետակն է հղում ողջույն՝
Ալիքներով բյուրեղևէջ,
Ու մեր շեփորն է ողողանջում
Արշալույսի շողերի մեջ։



Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Սովետական Միության ժողովուրդները, աշխարհի բոլոր առաջավոր մարդիկ նշում են համաշխարհային պրոլետարիատի մեծ առաջնորդ և ուսուցիչ. գիտական կոմունիզմի հիմնադիր Կարլ Մարքսի ծննդյան 165-ամյակը և մահվան 100-ամյակը:

Մարքսը թողել է գրական բազմակողմանի և անսպառ ժառանգություն, նրա երկերը հրատարակվել են աշխարհի ավելի քան 100 լեզուներով՝ տասնյակ միլիոն տպաքանակով:

Մարքսիստական գաղափարների տարածումը և առաջին մարքսիստական խմբերի ու կազմակերպությունների ստեղծումը հայ իրականության մեջ և Հայաստանում սկսվում է 19-րդ դարի վերջից, մոտ 100 տարվա պատմություն ունի և սերտորեն կապված է Ռուսաստանում հեղափոխական շարժումների ու գիտական կոմունիզմի տեսության տարածման ու զարգացման հետ:

Մարքսի աշխատությունների թարգմանությամբ և մասսայականացմամբ դեռևս նախասովետական տարիներին զբաղվել են հայ առաջին սոցիալ-դեմոկրատները և առանձնապես բոլշևիկները, Վ. Ի. Լենինի զինակիցներ Իսահակ Լալայանցը, Բոգդան Կնունյանցը, Ստեփան Շահումյանը, Սուրեն Սպանդարյանը, Ալեքսանդր Մյասնիկյանը, Սարգիս Կասյանը, Աշոտ Հովհաննիսյանը, Պողոս Մակինցյանը և ուրիշներ:

1898 թ. հայերեն թարգմանվում և Աթենքում առանձին գրքույկով հրատարակվում է Մարքսի «Վարձու աշխատանք և կապիտալ» աշխատությունից մի գլուխ՝ «Ինչ է աշխատանքի վարձը և ինչպես է նա որոշվում» վերնագրով: Մեկ տարի հետո «Գաղափար» հանդեսում Մարո և Ավետիս Նազարբեկյանների թարգմանությամբ առաջին անգամ հայերեն հրապարակվում են մարքսիզմի ծրագրային փաստաթղթի՝ Մարքսի և Էնգելսի «Կոմունիստական կուսակցության մանիֆեստի» առաջին և երկրորդ գլուխները՝ 1872 թ. գերմաներեն հրատարակության առաջաբանով:

1893—1894 թթ. հայ սոցիալ-դեմոկրատ Հովսեփ Աթաբեկյանցի ջանքերով գերմաներենից հայերեն են թարգմանվում «Կոմունիստական կուսակցության մանիֆեստի» լրիվ տեքստը և Էնգելսի «Սոցիալիզմի զարգացումը» աշխատությունները: 1893 թ. նոյեմբերի 23-ին Հ. Աթաբեկյանցին գրած պատասխան նամակում Էնգելսը շնորհակալություն է հայտնում այդ աշխատությունները հայերեն լեզվով թարգմանելու համար: Հետագայում «Կոմունիստական կուսակցության մանիֆեստը» ունենում է բազմաթիվ այլ թարգմանություններ և հրատարակություններ, որոնցից հատկապես նշանակալից է 1904 թ. Ժնևյան հրատարակությունը: Դա մարքսիզմի «երգ երգոցի» առաջին լրիվ հրատարակությունն էր, որը գերմաներենից թարգմանել էր Ստեփան Շահումյանը: Լենինի ցուցումով Շահումյանը 1904 թ. Ժնևում ստեղծել էր «ՌՍԴԲԿ Կենտկոմին կից վրացերեն և հայերեն լեզուներով սոցիալ-դեմոկրատական կուսակցական գրականության հրատարակության հանձնաժողով», որը մեծ դեր է կատարում մարքսիզմ-լենինիզմի պրոպագանդայի գործում: «Կոմունիստական կուսակցության մանիֆեստի» և Լենինի աշխատությունների հայերեն հրատարակությունները դեռևս 20-րդ դարի սկզբին նշանավոր իրադարձություն էին Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների կյանքում և ընդհանրապես հայ հասարակական-քաղաքական մտքի պատմության մեջ:

1906 թ. Թիֆլիսում Ստ. Շահումյանի թարգմանությամբ «Ստ· Լիսիցյան և ընկերության» հրատարակությամբ լույս է տեսնում Մարքսի «Վարձու աշխատանք և կապիտալ» աշխատությունը, որը հետագայում մի քանի անգամ վերահրատարակվում է:

Մարքսի առանձին աշխատությունների, Էնգելսի հետ համատեղ գրած երկերի ժողովածուների հայերեն լեզվով թարգմանությունը, հրատարակումն ու տարածումը կազմակերպված ու լայն բնույթ է ստանում սովետակւան իշխանության տարիներին, երբ ստեղծվում են կուսակցական ու պետական հրատարակչություններ:

**Սովետական իշխանության տարիներին Երևանում հայերեն լեզվով հրատարակվել են Մարքսի մոտ 120 անուն աշխատություն՝ մեկ-միլիոն տպաքանակով: Այդ աշխատությունների թարգմանության գործում խոշոր դեր են կատարել Սարգիս Կասյանը, Թադևոս Ավդալբեկյանը, Պողոս Մակինցյանը, Երվանդ Տեր-Մինասյանը և ուրիշներ:**

**Մարքսի աշխատությունների հայերեն թարգմանությունների մեջ առանձնապես կարևոր ուղենիշ է «Կապիտալի» առաջին հատորի գերմաներենից կատարված թարգմանությունը, որն իրականացրել է նշանավոր տնտեսագետ, պատմաբան ու գրականագետ Թադևոս Ավդալբեկյանը: «Կապիտալի» առաջին հատորը լույս տեսավ Երևանում, 1933 թվականին, հետագա տարիներին հրատարակվեցին նաև 2-րդ և 3-րդ հատորները: «Կապիտալը» տնտեսագիտական հանճարեղ աշխատություն լինելով հանդերձ, անգնահատելի ավանդ է մարքսիստական փիլիսոփայության ու գիտական կոմունիզմի զարգացման գործում:**

**Մարքսի, Էնգելսի, Լենինի գրական ժառանգության ուսումնասիրությունն ու հրատարակությունը երկար տարիներ է, ինչ կենտրոնացած է ՍՄԿԿ Կենտկոմին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտում, ինչպես նաև Գերմանիայի սոցիալիստական միասնական կուսակցության Կենտկոմին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտում, որոնք վերջին տարիներին սկսել են իրականացնել Մարքսի և Էնգելսի երկերի հրատարակությունը 100 հատորով: Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական մասնաճյուղը և «Հայաստան» հրատարակչությունը ձեռնամուխ են եղել Մարքսի և Էնգելսի երկերի բազմահատորյակի հայերեն թարգմանությանն ու հրատարակությանը, որի իրականացումը կարևոր իրադարձություն կլինի հայ ժողովրդի կյանքում:**

**ԳԵՎՈՐԳ ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ**
ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս



## ԱՇԽԵՆ ԱԲԱՋՅԱՆ

Պատերազմի ժամանակ սարում նորածնի ձայն չլսվեց:

Իսկ ահա մի տարի է, կռիվն ավարտվել է, արևն էլ է ուրախ, սարերն էլ, աղբյուրներն ու հավքերն էլ: Երեկ հուլիսի վերջին կիրակին էր, վարդավառ էր, ի՜նչ ուրախություն, ի՜նչ խնդություն: Չորս տարի ո՞վ վարդավառի մասին մտածեց, ո՞վ զգաց նրա գալն ու գնալը: Իսկ երեկ ի՜նչ զարդեր էին հագել սարերը, ծաղիկները ոնց էին շողշողում:

Դա երեկ էր:

Այսօր օրն սկսվեց սովորականի պես. առավոտյան կովկիթն ավարտվեց, հորթարածը ուզում էր հորթերը հանդը քշել, տավարածները ուզում էին հո՜-հո՜ անելով կովերը հակառակ հանդի վրա տանել, կանայք ուզում էին անցնել տնական գործերին, մեկ էլ հարայն ընկավ, թե Հայկանուշը, իմ մորաքույր Հայկանուշը, իրեն «մի տեսակ» է զգում...

Կանանց շարժումները դարձան արտակարգ շտապ, տղամարդիկ շտապեցին արխաջից հեռացնել անասունները, արոտավայրում թողեցին և իսկույն ետ դարձան, սայլապան Հարութ քեռին, որ առավոտից սայլի առնին էր նորոգում, անիվները մազութում, որ կեսօրին գյուղ գնա, հրաժարվեց մտադրությունից. գիշերը հովին դուրս կգամ, ասաց: Միայն պահեստապետ Առաքելն ու Սաթենիկ տատը չկարողացան գործը թողնել. կաթի վերամշակումը հետաձգել չէր կարելի, կթթվեր, ստիպված զտիչ մեքենայի դողոցը կապեցին, աչքերն անընդհատ իմ մորաքույր Հայկանուշի վրանի կողմը:

Երեխա էր ծնվում...

Պատերազմից հետո առաջին երեխան, որի ձայնին կարոտ էին մարդիկ, կարոտ էին սարերը, նույնիսկ օդում ծլվլացող հավքերը, կարոտ էին բոլորը...

— Նորածնի ճի՞չ ենք լսելու, փառքդ շա՜տ, աստվա՛ծ,— Մուքել պապը երանությամբ փստացնում է չիբուխը, խոշոր, ջրակալած աչքերը հուզմունքով սրբում, գլուխն օրորում,— փառքդ շա՜տ, աստվա՛ծ:

Մեր տեսած նորածինը մինչև հիմա հորթն է եղել, գառը, ձիու և ավանակի քուռակները, մոշահավի ու ծտերի ձագերը, շան քոթոթները: Բոլորին էլ սիրել ենք, հորթի ու գառան փափլիկ դնչիկները համբուրել, ծտիկների դեղնակտուց նորածիններով հիացել, ձիու մտրուկների պոչն ու բաշը շոյել, նրան պատկերացրել քամու հետ մրցելիս, մեզ գյուղ տանելիս, սարերում հովերի հետ խաղալիս: Մեզ համար նորածին էին նաև բացվող ծաղիկնե-

# ՄԱՐԴ ԷՐ ԾՆՎԵԼ



Նկ. ՌԱՖԱՅԵԼ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

րը, բայց նորածին երեխա առաջին անգամ էինք տեսնելու: Սարում ծնված երեխաներս, որ դեռ սարեցի էինք, այսինքն դեռ գյուղ չէինք տեսել, որովհետև դպրոցական չէինք, մեկս մյուսից մեկ-երկու տարով էինք մեծ ու փոքր, և հասկանալի է, չէինք հիշում մեզանից փոքրերին: Հետո այսքան երկար ընդմիջում չէր եղել... Հի՞նգ տարի...

Արդեն կեսօրը մոտենում է, կաթի գործը Սաթենիկ տատն ու պահեստապետ Առաքելը ավարտում են, շունչ քաշում: Սաթենիկ տատը կամաց-կամաց, իր ծանր քայլերով, կանանց մոտ է շտապում: Ծտերը բանջարկուտում շատացնում են ծլվլոցները, հովը հեռավոր գագաթներից փափուկցով մեզ է հասնում, մեղմացնում արևի շոգ զայրույթը, հորթերը տրտինգ տալով դեպի ջուրն են վազում, մեղուները բզզալով գնում են մի ծաղկից մյուսը, համտես անելով բոլոր բույրերն ու գույները, կարծես ուզում են ջոկել լավը վատից, բայց բոլորն էլ լավն են դուրս գալիս, ստիպված նորից ետ են դառնում, որ նորից համտես անեն:

— Տղա՞...

Ո՞վ էր հայտնեց: Այս լսվելու հետ օդում մեկ էլ տրաքեց Մուքել պապի հրացանը:

— Տղա՞...

Պատերազմից հետո առաջին նորածինը, որի ճիչը երկփողանի հրացանի գիլ ձայնին խառնըվեց, գնաց, հեռացավ, արձագանքվեց հեռավոր սարերում, հեռավոր լեռնագագաթներին, լեռնագագաթներից էլ վեր բարձրացավ, հասավ երկնքին ու ողջ աշխարհին իմաց տվեց.

— Նոր ծնո՞ւնդ... մա՞րդ է ծնվել, առաջի՞ն մարդը պատերազմից հետո, առաջի՞ն սարեցին...

Վազում ենք դեպի վրանը: Տղամարդիկ էլ են մոտիկ գալիս: Վարսենիկը արդեն բարուրած նորածնին մեկ վայրկյանով միայն դուրս է բերում, ցույց տալիս ու ներս տանում:

Հարութ քեռին խնդությունից ու հրճվանքից գրկում է նորածնի եղբորը՝ վեցամյա Լևոնին, լայն ափերի մեջ բարձրացնում, նայում և ուրախ-ուրախ ասում.

— Եղբայր ունես, Լևոնի՛կ ջան, եղբա՜յր...

Մեկ էլ Լևոնի տզզոցն ենք լսում:

— Ես մեծ եղբայր էի ուզում, որ ինձ օգներ... Դա ո՛չ կարող է վազել, ո՛չ կարող է ճիպոտ բռնել,— և Լևոնը տզզոցը շարունակում է:

Հավաքվածները ծիծաղում են, ո՜նց են ծիծաղում... Հետո ծիծաղը ծափի է վերածվում, երգ ու նվագի.

— Մա՜րդ է ծնվել...

Դիլիջանի № 3 դպրոցի աշակերտնԱ ստեղծել են իրենց դպրոցական անտւ պետությունը, հսկում են բուսական և կ դանական աշխարհի պահպանությա հետևում Աղստև գետի մաքրությա Պատանի բնասերների աշխատանքնե ղեկավարում է դպրոցի դիրեկտոր Օ( Սարգսյանը:

Դպրոցականները սերտ կապեր են պա պանում Դիլիջանի անտառ-արգելանո հետ, պատվաստի միջոցով ազնվացնո են վայրի պտղատու ծառերը:

Վերջերս դպրոցական անտառապետո թյան մի խումբ անդամներ արժանացա ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվս ճումների ցուցահանդեսի մեդալների: Նե կայացնում ենք պատանի բնասերնե առօրյան պատկերող դրվագներ:

# ՈՒՐԻՇԻ ՀԱՄԱՐ ՓՈՍ ՓՈՐՈՂԸ...

Տղաներն իրենց հերթական համայցն էին կատարում «Աղվեսների բացատում»: Ստեփանը, որ գնում էր առջևից, հանկարծ կանգ առավ.

— Սպարտա՛կ, արի մի տե՛ս, նորից անիրավը...

Հաճարենու մամռաշ շիվերի արանքից չարագուշակ դուրս էր ցցվել թակարդի եզրը: Նրա մեջ անշնչացել էր սկյուռիկը:

Առաջին անգամ չէր, որ տղաներն այս կողմերում թակարդներ էին գտնում: Անցյալ օրը աղվես էր ընկել, դրանից առաջ՝ կզաքիս: Անհիրտ որսագողը պատրաստ էր ոչնչացնել անտառն ու անտառի բոլոր կենդանիներին:

Ստեփանն ուզեց վերցնել թակարդը, բայց ընկերը ետ պահեց.

— Սպասի՛ր, Ստեփա՛ն, ձեռք մի՛ տուր, մտքովս մի բան անցավ:

— Ի՞նչ:

— Որսագողը խորամանկ է, ճի՞շտ է: Բայց մենք կլինենք նրանից էլ խորամանկ: Տանը բահ ունեք, չէ՞:

— Իսկ ի՞նչ կա:

— Վազի՛ր տուն, վերցրու՛ բահը, մեր տնից էլ՝ քլունգը, և խսլույն վերադարձի՛ր:

Ստեփանը թեք բլրալանջով սուրաց ցած: Ծուտով սկյուռի արահետի վրա տղաները մի հսկայական փոս փորեցին և ծածկեցին չոր, բարակ ճյուղերով, վրան տերևներ փռեցին:

— Կարծես ամեն ինչ կարգին է,— հոգնած, բայց գոհ ասաց Սպարտակը:



# Արժանացան մեդալների



Ապա պայուսակից մի թուղթ հանեց, ինչ-որ բան գրեց, ծալեց ու դրեց սկյուռի թաթիկի տակ:

— Հիմա թաքնվենք:

Երեկոյանում էր: Դիմացի սարի ստվերը ընկել էր «Աղվեսների բացատի» վրա ու շարունակում էր սողեսող մոտենալ անտառի փեշին:

Ժամանակ անց լսվեց ճյուղերի ճթթոց: Արահետով գալիս էր ինչ-որ մեկը: Ոտնաձայները մոտեցան թակարդին: Տղաները զգուշորեն գլուխները դուրս հանեցին: Որսագողը աչք ածեց չորս բոլորը, ուսա-

պարկր գետնին դրեց ու կռացավ: Եվ հենց նույն պահին էլ վեր ցատկեց օձից խայթվածի նման: Ձեռքին թղթի կտորն էր: Շփոթված մեկ թղթին էր նայում, մեկ անկենդան սկյուռին: Հետո սթափվեց և, այն է, ուզում էր հեռանալ, երբ ճարճատյունով կոտրվեցին չոր ճյուղերը, լսվեց խուլ թրմփոց: Որսագողը, տնքտնքալով ու հայհոյելով, մի կերպ դուրս եկավ փոսից, ու կաղին տալով փախավ դեպի ծմակուտ: Նրա ետևից դեռ երկար հնչում էր երկու ընկերների բարձր ծիծաղը:

Ճանապարհին, երբ տուն էին դառնում, Ստեփանը հարցրեց ընկերոջը.

— Այդ ի՞նչ էիր գրել թղթի վրա:

— Ոչ թե ես, այլ՝ սկյուռիկը,— խորամանկ ժպտաց Սպարտակը:— Նա գրել էր. «Այ անխիղճ մարդ, ինչու՞ ինձ սպանեցիր: Իմացած եղիր, ուրիշի համար փոս փորողը, ինքն է ընկնում մեջը»:

«Աղվեսների բացատում» դրանից հետո թակարդներ չերևացին:

# ՄԻՆՈՒՃԱՐԸ

Փոքրիկը տխուր աչքեր ուներ, ու դրանք միշտ խոնավ էին: Կորցրած մայրիկի կարոտի՞ց էին խոնավացել, թե՞ պարզապես այդպիսին են բոլոր եղնիկների աչքերը: Նրան գտել էին արգելանոցի աշխատակիցները: Եղնիկը կանգնել էր մանրակաթիլ անձրևի տակ ու սրսփում էր ամբողջ մարմնով: Նա շատ փոքրիկ էր, անպաշտպան: Մայրիկը մոտերքում չէր: Գուցե գայլերից հալածված փախե՞լ էր, կամ դիտավորյալ իր ետևից էր տարել գիշատիչներին, փրկելու համար ձագուկի կյանքը: Իսկ գուցե թանձր մառախու՞ղն էր մեղավոր, որ նա կորցրել էր իր ծնողին: Ի՛նչ էլ լիներ, նրան այդտեղ թողնել չէր կարելի: Կսատկեր ցրտից կամ էլ գիշատիչ կենդանիների զոհը կդառնար:

Եվ նրան բերեցին արգելանոց: Այստեղ՝ ցանկապատի ետևում նրան վտանգ չէր սպառնում: Բայց ձագուկը դարձյալ տխուր էր: Երկաթյա ճաղերի արանքից նայում էր անտառի հեռուներին, աննշան ձայներից խլշում ականջները, ասես այդ ձայների մեջ որոնելով մոտիկն ու հարազատը:

Արգելանոցում կային արջեր ու նապաստակներ, փորսուղներ ու գայլեր, եղջերուներ ու կզաքիսներ, բայց դրանցից և ոչ մեկը չէր օգտվում այն ուշադրությունից, ինչ եղնիկը: Սակայն նա չէր ընտելանում իր նոր «ընտանիքին»: Պատահում էր, օրերով ոչինչ չէր ուտում և ավելի էր հյուծվում:

Մի օր էլ արգելանոց եկան դպրոցականները: Նրանք դիտեցին թանգարանը, ծանոթացան կենդանի անկյան բնակիչներին ու երբ պատրաստվում էին վերադառնալ, 8-րդ դասարանցի Գայանե Սաղաթելյանը ոտքը կախ գցեց: Նա մտավ դիրեկտորի մոտ և ասաց.

— Ես ձեզնից մի բան եմ խնդրում: Ի՞նչ կլինի, եղնիկին տաք, տանեմ պահեմ:

Աղջիկն այնքան թախանձագին էր խընդրում, որ չկարողացան մերժել, միայն ասացին.

— Տես հա՛, վստահում ենք քեզ, մեր մինուճարին լավ կնայես:

Այդ օրվանից եղնիկի ձագն սկսեց բնակվել Գայանենց մոտ: Գայանեն պարտեզում ցանկապատել էր մի փոքրիկ տարածություն, կենդանու համար հարմարավետ տնակ պատրաստել: Աղջիկն ամեն օր եղնիկին կերակրում էր թարմ կաթով: Հետո սկսեց թարմ կանաչով հյուրասիրել: Հատուկ նրա համար գնում էր շուկա և բերում մրգեր, բանջարեղեն:

Եղնիկն ընտելացավ իր խնամակալին: Նա թողնում էր, որ Գայանեն իրեն շոյի, փաղաքշի: Աղջկան տեսնելիս մոտ էր վազում, դունչը երկարում և հորթուկի պես ուրախ մզզում:

Անցան շաբաթներ: Եղնիկն այլևս առաջվա պես տխուր ու մելամաղձոտ չէր: Նա առույգացել էր, կայտառացել: Երբ մոտենում էր դպրոցից վերադառնալու ժամանակը, եղնիկը մոտենում էր պարտեզի դռնակին և սպասում Գայանեին: Հաճախ Գայանեի հետ մինուճարին տեսակցության էին գալիս դպրոցական անտառպետության անդամները: Եվ բոլորն էլ անպայման որևէ համեղ նվեր էին բերում եղնիկի համար:

Մի օր էլ եկան արգելանոցի աշխատակիցները: Նրանք հազիվ ճանաչեցին «մինուճարին»: Շատ գովեցին Գայանեին: Ասացին, որ եղնիկն այլևս խնամքի կարիք չունի: Նա կարող է հոգալ ինքն իր կարիքները:

Եկավ բաժանման օրը: Անտառի եզրին մեքենան կանգ առավ: Թափքը բաց արեցին, և եղնիկը ոստյունով ցատկեց ներքև: Արտասովոր ազատությունից շշմած՝ նա մի պահ կանգ առավ, խլշեց ականջները, հոտոտեց օդը ու անվստահ քայլեց դեպի անտառաշերտը: Նա մերթ ոստոստում էր, մերթ կանգ առնում, նայում իր շուրջը, ասես մտածելով, այս ու՞ր է ընկել: Գայանեն և մյուսները կանգնել էին մեքենայի

մոտ ու ձեռքերն էին թափահարում: Եղնիկը բավականին հեռացել էր, երբ մեկ էլ հանկարծ կտրուկ շուռ եկավ, արագ ոստյուններով հասավ մարդկանց, մոտեցավ Գայանեին, իր խոնավ, գեղեցիկ աչքերով նայեց աղջկան, դունչը երկարեց, ուրախ մզզաց, հետո շրջվեց ու սիգապանծ ոստյուններով սլացավ լեռան զըմրուխտ լանջերն ի վեր, դեպի կանչող հեռուները:

## ԱՊՐԻ՛Ր, ԳԻՀԻ

Գիհին՝ անտառների մշտադալար գեղեցկուհին, կամաց-կամաց վերանում է: Ոչ ոք չի կարողանում բացատրել դրա պատճառը: Փորձեր են արվել աճեցնել սերմերով, բայց չի հաջողվել: Գիհին պակասում է նաև Դիլիջանի անտառներից: Այն գրանցված է «Կարմիր գրքում»:

Բայց պատահեց մի դեպք, որը հնարավորություն է տալիս հուսալ, թե գիհուն, այնուամենայնիվ, կհաջողվի փրկել:

Երեխաները արշավի էին գնացել Գետիկի հովիտը: Այստեղ է գտնվում Նխնաբաթի վանքը: Դպրոցականները հիանում էին միջնադարյան վարպետների հանճարով, երբ հանկարծ նրանց ուշադրությունը գրավեց կիսավեր պարիսպը: Պարսպի վրա աճել էր գիհու մի փոքրիկ ծառ: Ինչպե՞ս էր նա հայտնվել այստեղ: Մոտակայքում ուրիշ գիհիներ չկային, նշանակում է, ծառը ոչ մի տեղից արմատ չի ստացել: Ուրեմն աճել է սերմից:

Երեխաները գործի անցան: Նրանք հավաքեցին գիհու սերմեր, ցանեցին իրենց փորձարարական հողամասում: Հողը սնուցեցին հումուսով, հարստացրին օրգանական պարարտանյութերով: Եվ մի օր էլ տեղի ունեցավ այնքան սպասված հրաշքը: Հողից իրենց կանաչ գլխիկները հանեցին գիհու փոքրիկ ընձյուղները: Դպրոցական անտառապետության անդամների համար դա իսկական տոն էր: Նրանք հերթապահություն սահմանեցին տնկարանում, սկսեցին ագրոտեխնիկական միջոցառումներ անցկացնել մասնագետների խորհուրդներով: Ծիլերն աճեցին, մեծացան:

Հիմա «ծառերի աճեցման դպրոցում» սոճու, տանձի, թեղու, շագանակենու, վայրի, դեկորատիվ և մրգատու այլ ծառերի կողքին բարձրանում են գեղեցկատես գիհիները: Երբ գա ժամանակը, երեխաները դրանք կտնկեն անտառի նոսր հատվածներում:

ՎԱՐՈՒԺԱՆ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

## 8. ՍՏՈՐԵՐԿՐՅԱ ՇՆՈՒԿՆԵՐ

**Այն ժամանակ, երբ մեր խմբի մի մասը զբաղված էր Քասաղի կիրճի քարանձավների ուսումնասիրությամբ, մյուս կեսը եռանդով հետազոտում էր Արագածի արևելյան լանջերի քարանձավները՝ Ջորափից մինչև Շիրակի դաշտ: Այնտեղ տղաներն իրենց համար քարանձավների մի նոր ու ուրույն աշխարհ էին հայտնաբերել, որն ամեն ինչով տարբերվում էր մինչ այդ մեր տեսած քարանձավներից: Դրանք այն զարմանալի քարանձավներն են, որոնց մասին մի քանի անգամ տարբեր առիթներով ակնարկում է հայ ճարտարապետության մեծ երախտավոր Թորոս Թորոմանյանը: Մենք այդ այրերը պայմանականորեն անվանեցինք «Աղձքի քարանձավներ», որովհետև ամենից շատ դրանցից հանդիպում են մի հին գյուղի շրջակայքում, որը հնուց ի վեր հայտնի է եղել Աղձք պատմական անունով:**

**Այս այրերը որպես թաքստոցներ ոչինչ չարժեն. այստեղ մարդկանց կարելի է ծըխով խեղդել այնպես, ինչպես աղվեսներին են խեղդում իրենց բներում: Բայց որպես հացահատիկի և գինու պահեստներ «Աղձքի քարանձավները» ուղղակի անփոխարինելի են: Որ դրանցում եղած հորերի գոնե մի մասը կարող է ծառայել որպես գինու ինքնատիպ և հսկա կարասներ, վըկայում է նաև Քսենոֆոնը, հայտնելով, որ դեռ մ. թ. ա. հինգերորդ դարում հայերը գինին պահում էին քարերով շարած և խնամքով ծեփած հորերում: Այդ տեսանկյունից արդեն հասկանալի է դառնում, թե ինչու «Աղձքի քարանձավների» մի շարք հորեր իրար են միացրած նեղ, մատնաչափ կավե խողովակներով: Փաստորեն հոր-կարասները վերածված են հաղորդակից անոթների:**

**Որոշ անձավներում հին շինարարները յուրահատուկ շաղախով լցրել են քարանձավի ոչ միայն մի, այլ միաժամանակ մի քանի հատվածները, այրը բաժանելով առանձին սրահների: Եվ ստացվում են «Աղձքի քարանձավների» պոչավոր արարածներ հիշեցնող հատակագծերը, որտեղ պոչը անձավի մուտքի մասն է, մարմինը՝ պահեստը: Այրերի հատակագծման գաղտնիքը պարզելուց հետո արդեն դըժվար չէր բացահայտել նաև նրանց նախնական տեսքը. անհրաժեշտ է միայն կետագծերով իրար միացնել անձավների**

ԷԴՎԱՐԴ ՍԱՐԳՍՅԱՆ

# ՆՐԱՆՑ ՍԻՐՏԸ ԼԵՌՆԵՐՈՒՄ Է

լայն հատվածները և կստացվեն բոլորովին էլ ոչ արտառոց ձևի սովորական հըրաբխային քարանձավներ:

Արագածի լանջերին Կոշից մինչև Շիրակի բարեբեր դաշտը սփռված քարանձավ-շտեմարանների խոր հնությունը կարծես թե հուշում է, որ «թե քո որկորը Շարայի որկորն է, բայց մեր ամբարները Շիրակի ամբարները չեն» հանրահայտ ասացվածքում դարձյալ խոսքը վերաբերում է Արագածի փեշերի քարանձավպահեստներին:

«Աղձքի քարանձավներից» շատերի մեջ քամու մշտական հոսք է զգացվում: Դըժվար է ասել՝ զուտ պատահականությա՞մբ, թե՞ միտումնավոր կերպով են մարդիկ քամու հոսք ունեցող քարանձավները պահեստներ դարձրել, որպեսզի կարողանան ապահովել դրանց օդափոխությունը: Ինչպես էլ որ լինի, կարևորը փաստն է:

Այդպիսի քամոտ քարանձավներից մեկը պատահաբար հայտնաբերվել էր 1972 թվին Աղձք—Ջորափ գյուղի մոտ ջրանցք անցկացնելու ժամանակ: Ջրանցքի հունը պայթեցնելիս հանկարծակի փլվում է գետնի տակ թաքնված քարանձավի առջևի պատը և այրը հայտնաբերվում է: Այդ անձավի մեջ մի հոր կա, որտեղից քամին այնքան ուժեղ էր փչում, որ հորն իջնելիս ուղղակի սուլում էր ականջների մեջ: Անփորձ մարդն այդ սուլոցից նույնիսկ փշաքաղվում է:

Արագածի այդ լանջերին ջուրն այնքան էլ առատ չէ և ջրի կարոտ գյուղացիները մեր դարի քսանական թվականներին որոշում են ստորերկրյա քչքչոցների հետքերով գտնել գետնի տակով հոսող ջրերը: Նրանց հրավերով 1928 թվին Արագածի լանջերն է գալիս օդերևութաբան Վ. Ալբերտը: Հսկա ձայնափողը վիթխարի ականջի նման քարանձավների պատին կպցնելով, նա սկսում է ունկնդրել անձավների շշուկներին, փորձելով կռահել, թե ինչ են պատմում դրանք:

Ալբերտը պարզում է, որ հոսող ջրի աղմուկ հիշեցնող այդ ստորերկրյա ձայները որոշ դեպքերում պայմանավորված են անձավների նեղ ճեղքերից ու անցքե-

րից փչող քամով: Ճեղքերը խցանելիս ձայնն էլ կտրվում է: Հավանաբար այդ նույն օդային հոսանքներով են պայմանավորված մի շարք քարանձավներից դուրս եկող այն գոլորշու ամպերը, որոնք գյուղացիները տեսնում են ձմռանը:

Մնացած դեպքերում ստորերկրյա շշուկների պատճառը մնում էր անհայտ: Հենց այդ պատճառով էլ հաջորդ տարի այդ քարանձավներն է գալիս տարբեր տեսակի սարքերով զինված օդերևութաբանական արշավախումբը: Եվ որքան էլ անսպասելի էր, գործիքները ցույց են տալիս, որ ջրի քչքչոց հիշեցնող այդ ձայները օրվա ընթացքում փոխում են իրենց ուժգնությունը: Եթե դրանք ստորերկրյա ջրերի ձայներ լինեին, պետք է որ ամբողջ օրը հնչեին նույն ձևով. մինչդեռ պարզվում է, որ ձայները ուժեղանում են միայն առավոտյան և երեկոյան ժամերին: Եվ արշավախումբը այն միահամուռ եզրակացության է գալիս, որ Արագածի քարանձավների շշուկները, որ մարդիկ դարերով կապել են ստորերկրյա ջրերի հետ, ոչ այլ ինչ են, եթե ոչ քարայրների ճեղքերից փչող աննկատելի քամու սուլոց:

Կարծես թե «ղողղողցների» գաղտնիքը վերջնականապես լուծվեց: Բայց լուծվե՞ց արդյոք:

Կոշ և Ուջան գյուղերի միջև երեք քարանձավ կա համարյա իրար մոտ և մեկը մյուսից բարձր մակարդակների վրա: Ինչոր ժամանակ երեքից էլ ջուր է բխել: Բայց այժմ դրանցից երկուսը չորացել են և դրանց մեջ ձայներ են հնչում: Երրորդում դեռ ջուր կա և դա էլ իր հերթին ստորերկրյա ուղիներով կապված է Ամբերդի գետից սկիզբ առնող ջրանցքի հետ: Երբ գետի ջրերը բաց են թողնում ջրանցքի մեջ, քարանձավում ջրի հոսքն ուժեղանում է:

Նման մի բան էլ դիտվում է այն չոր քարանձավներից մեկում, որտեղ, չգիտես թե որտեղից, ջուր է հայտնվում, երբ այն սկսում է հոսել մոտակա գործող ջրանցքում: Այդպիսի թափառող ստորերկրյա ջրերի մասին են հուշում նաև այդ կողմերում բխող «թափառող» աղբյուրները: Դրանք ժամանակ առ ժամանակ անհետանում են և սկսում են բխել իրենց նախկին ակունքներից ոչ հեռու, որպեսզի հետո այդտեղից էլ անհետանան և սկսեն գործել երրորդ տեղում:

Որ Արագածի փեշերի «շշնջացող» քարայրները կապ ունեն երկրի խորքերում գտնվող ստորերկրյա դատարկությունների ու ճեղքերի հետ, վկայում է նաև հետևյալ փաստը. մի քանի տարի առաջ Կոշ գյուղի մոտ գտնվող ջրանցքը ճեղքվել էր և ջրերը թափվում էին քարանձավների մեջ: Ամբողջ երեք ամիս ջրերը լցվում էին քարանձավ և անհետանում գետնի տակ, ասես մի անհատակ անդունդ կար այնտեղ: Մեզ այդպես էլ չհաջողվեց պարզել, թե ուր են հոսում այդ ջրերը: Այդ բանը պարզաբանելուն կարող էր օգնել Կաստերեի կողմից առաջարկված ստորերկրյա ջրերի ներկման փորձը, երբ մի վայրում ներկված ջրերը ստորերկրյա ճամփորդություն կատարելուց որոշ ժամանակ անց կրկին հայտնվում են երկրի երեսին: Բայց, ցավոք, անհրաժեշտ քանակով ներկանյութ՝ ֆլուրեսցին, չհաջողվեց ճարել:

Արագածի ջրերի և նրա ստորոտից բխող աղբյուրների կապը ժողովուրդը շատ վաղուց է նկատել և ձևակերպել այն լեգենդի ձևով, թե իբր մի անգամ հովիվը մահակը նետում է Արագածի վերին մասերում գտնվող Քարե լիճը և մի քանի օր հետո մահակը դուրս է գալիս Մեծամոր լճի ստորերկրյա աղբյուրներից: Այս աղբյուրներն իրականում էլ Արագածի ստորերկրյա ջրերն են:

Այս հանրահայտ լեգենդում ամեն ինչ ճշմարտանման է. թե՛ Արագածի ստորոտի աղբյուրների կապը վերևում գտնվող ջրերի հետ և թե՛ նույնիսկ մահակի՝ ստորերկրյա ճամփորդության ժամկետը: Կաստերեի՝ ջրերի ներկման փորձերում նույնպես ստացվում է գետնի տակ քարանձավային ջրերի տեղաշարժի նույնպիսի արագություն, որը կազմում է ժամում մի քանի հարյուր մետր: Ստորերկրյա ջրերի այդքան դանդաղ հոսելու պատճառը անձավների նեղ հատվածներն ու ճեղքերն են:

Արագածի ստորերկրյա ջրերի մյուս մասը պայմանավորված է ոչ թե աղբյուրներով, այլ գետնի տակ սուզված անանուն գետերով: Քայլելով այդ գետերի վաղուց լռած հուներով՝ կարելի է հանդիպել դրանցից սկիզբ առնող հնադարյան ջրանցքների մնացորդների և ջրաղացի ավերակների: Այդ անհետացած գետերից մեկը գտնվում է Կոշ և Թալիշ գյուղերի արանքում: Երկրաբանական գրականության մեջ նույնիսկ ակնարկ կա, իսկ այդ գետի մասին հիշատակվում է պատմական աղբյուրներում, բայց չնայած մեր համառ որոնումներին, այդ կարևոր հիշատակությունը այդպես էլ չհաջողվեց գտնել:



ՎԼԱԴԻՄԻՐ ԿՈԼՈՄԻԵՑ

# ՓՈՔՐԻԿ ԱՐՔԱՆ

(Բալլադ-հեքիաթ)

Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ



Ազդարարում են ի լուր բազմության.
—Արքան վախճանվեց... Կեցցե՜ նոր արքան:

Իսկ փոքրիկ արքան մանուկ էր դեռ խակ,
աշխարհի չար ու բարուն անտեղյակ:

Տոհմիկ պարոններն ամեն մի քայլին
փառաբանում են մանուկ արքային:

Իսկ նրանց համար այդ փոքրիկ տղան
ծնունդով իր մեծ թուր է և վահան:

Եվ պաշտպանեցին-պահեցին իրոք.
—Մեծացիր, գահի փոքրիկ ժառանգորդ:

Դասեր տվեցին նրան օր-օրի,
թե ինչպես պետք է նա թագավորի:

Ամեն շնապահ իբրև դաստիարակ
մի թույն էր լցնում նրա կրծքի տակ:

Եվ որպեսզի նա գործի միշտ հմուտ,
մոռանա ընդմիշտ բարություն ու գութ,

Ամեն առավոտ աղավնու մի ձագ
բերում էին, թե՝ խեղդի՛ր համարձակ,

Կտրի՛ր գլուխը մի ակնթարթում,
թող տեսնեն արքան ո՜նց է գլխատում:

Որ մեկը փորձի գլուխ բարձրացնել,
հետո կարենաս դու նույնը անել:

Այդպես էլ գուցե տղան մեծանար,
դառնար անողոք ու չար բռնակալ,

Թե որ փոքրիկին՝ օրոցքի մեջ դեռ
մի անգամ բարի ոգին չայցելեր:

Դիպել էր թեթև նրան իր թևով
ու հետո անտես սահել եթերով:

Գուցե և ա՛յդ չէր պատճառն իսկական,
այլ այն, երբ խեղդեց հավքը մի անգամ,

Մի աղջիկ սրբեց արցունքները ջինջ...
Տղայի հոգում փոխվեց ամեն ինչ:

Թողեց պալատը ու փախավ անհետ
դաստիարակներից իր այդ չարաղետ:

Փախավ արյունից, ոճիրից անվերջ,
արքայությունից փախավ մարդամեջ:

Մանուկների մոտ գնաց տարեկից
ու աչքին փոխվեց աշխարհը մեկից:

Խաղում էր անհոգ, ծիծաղում, պարում,
ո՛չ մահ կար այստեղ և ո՛չ էլ արյուն:

Ամեն գահի տակ՝ հազար ու մի մահ,
անմեղ մանուկին պետք չէ ոչ մի գահ:

Թարգմ. ՎԱՐԴԳԵՍ ԲԱԲԱՅԱՆԻ

ԻՏԱԼՈ ԿԱԼՎԻՆՈ

# ԿԵՐԱԿՐԱՄԱՆԸ

«Կերակրաման» կոչվող այդ կլորավուն և տափակ ամանի հմայքը ամենից առաջ այն էր, որ կափարիչը պտտվող էր։ Եվ ահա, դեռ կափարիչը լրիվ չպտտած, ջուրը վազում է բերանիցդ, հատկապես այն ժամանակ, երբ, ասենք, չգիտես, թե ինչ է ներսի պարունակությունը։

Կերակրամանը ձեռք բերելու օրվանից բանվոր Մարկովալդոն այլևս ընթրիքին տուն չէր վազում, մնում էր աշխատանքի վայրում և այնտեղ էր ճաշում։ Նա դանդաղ բաց էր անում կափարիչը, հաճույքով հոտոտում ներսից եկող կերակրի բուրմունքը, հետո ձեռքը տանում էր դեպի տաբատի գրպանը՝ այնտեղից էլ հանելու լրագրի մեջ փաթաթված պատառաքաղը, որի առաջին պարտականությունը կերակուրը միմյանցից բաժանելն էր, քանի որ ժամերով կերակրամանում մնալուց ուտելիքը գունդ էր դառնում։

Ընթրում էր պահեստներից քիչ հեռու գտնվող նստարանի վրա, նրա տունը հեռու էր աշխատանքի վայրից, ուստի ժամանակ խնայելու, ինչպես և տրամվայի տոմսի ծախսից խուսափելու համար, նա գնեց այդ կերակրամանը և ամեն օր հետը տանում բերում էր, ճաշում էր բացօթյա, նայում անցուդարձող մարդկանց, իսկ ուտելուց հետո ծարավը հագեցնում կողքի շատրվանից։

Աշնանը, պարզկա օրերին, նա ընտրում էր արևոտ տեղ։ Ծառերի վրայից թափվող դեղնած տերևները անձեռոցիկի տեղ էին ծառայում։ Սովորաբար, երշիկի կեղևը նվիրաբերվում էր թափառական շներին, որոնք անմիջապես նրան մոտ ընկեր էին ճանաչում, հացի փշրանքները թողնում էր ճնճղուկներին, որ մոտակայքում երկյուղալի ոչ ոքի չտեսնելով, վրա էին թափվում ուտելիքին։

Մարկովալդոն ուտում էր ու մտածում. «Էդ ինչի՞ց է, որ կնոջս պատրաստածը էստեղ դուր է գալիս, բայց, ա՛յ, տանը՝ կռվտուքի, երեխեքի տզզոցի, ամեն դատարկ բանից առաջացող վեճի մեջ, ինչ էլ անես, մի բան պարտք ես մնում, ուտելիքից հաճույք չես ստանում»։ Խանդաղատալից ուտում էր մինչև ամանի տակը։ Ուտելուց հետո ափսոսանքով էր նայում դատարկ, մաքուր մաքրազարդված ամանին և տխրում էր։ Հետո կերակրամանն ու պատառաքաղը խնամքով փաթաթում էր լրագրի մեջ, դնում գրպանը, վեր էր կենում և ուղղվում դեպի պահեստները։ Քայլելիս՝ պատառաքաղը դիպչում էր ամանին և չխկչխկոց հանում։

Մի անգամ այնպես եղավ, որ կինը մեծ քանակությամբ նրբերշիկ գնեց։ Երեք օր շարունակ ընթրիքին նրբերշիկից ու շաղգամից բացի, նա ուրիշ ոչինչ չէր գտնում ընթրելու։ Նրբերշիկը ասես շան մսից լիներ, միայն նրա հոտը բավական էր ախորժակը փախցնելու համար, իսկ ինչ վերաբերում է շաղգամին, դա միակ բանջարեղենն էր, որ Մարկովալդոն տանել չէր կարողանում, գունատ ու լպրծուն տեսք ուներ։

Կեսօրին, երբ Մարկովալդոն բաց էր անում ամանը, նրբերշիկն ու շաղգամն արդեն սառած և իրար կպած էին լինում։ Մռայլկոտ Մարկովալդոն դժվարությամբ էր հիշում երեկվա կերածը, սկզբում հետաքրքրությամբ ու մեծագույն անհամբերությամբ էր բաց անում կափարիչը, որին միշտ հետևում էր հիասթափությունը։

Եվ այսպես, չորրորդ օրը, երբ նորից ամանում նրբերշիկ տեսավ, մի քիչ փորեցփորփրեց, հետո բարձրացավ տեղից և բաց կերակրամանը ձեռքին մտացրիվ թափառեց փողոցով։ Անցորդները զարմանքով էին նայում մի ձեռքին նրբերշիկով կերակրաման, իսկ մյուսին՝ պատառաքաղ բռնած մտամոլոր թափառող տղամարդուն. թվում էր, թե նա ոչ մի կերպ չի համարձակվում բերանը տանել առաջին պատառը։

— Է՜յ, քեռի՛.— պատուհանից ձայնեց մի տղա։

Մարկովալդոն բարձրացրեց հայացքը։ Առաջին հարկի մի հարուստ առանձնատան պատուհանի գոգին արմունկներով հենված՝ կանգնել էր մի տղա, իսկ կողքին ափսե էր դրված։

— Լսի՛ր, քեռի՛, ի՞նչ ես ուտում։

— Նրբերշիկ ու շաղգամ։

— Երանի՜ քեզ,— բացականչեց տղան։

— Հը՜մ,— անորոշ քրթմնջոց արձակեց Մարկովալդոն։

— Իսկ ես ստիպված եմ այս զզվելի տապակած ուղեղն ուտել։

Մարկովալդոն հայացքն ուղղեց դեպի պատուհանի գոգին դրված ափսեն, ուր ոռոնցիկ դարձերով, նուրբ, ինչպես ամպիկ, տապակած ուղեղն էր։ Մարկովալդոյի ռունգերը թրթռացին։

— Ի՞նչ է, ուղեղը դուրդ չի՞ գալիս,— հարցրեց նա տղային։

— Չէ՛, չեմ ուզում ուտել, և դրա համար էլ փակել են ինձ այստեղ։ Բայց միևնույն է, ուտողը չեմ։

— Իսկ նրբերշիկ սիրու՞մ ես։

— Վա՜խ, էն էլ ինչպե՜ս... Մեր տանը երբեք նրբերշիկ չեն ուտում։

— Որ էդպես է, դու քո ափսեն ինձ տուր, ես իմը քեզ կտամ:

— Ուռռա՛,— բացականչեց տղան. աշխարհը կարծես իրեն տվին:

Տղան Մարկովալդոյին մեկնեց իր հախճապակե ափսեն ու նախշազարդ պատառաքաղը, իսկ Մարկովալդոյից ստացավ նրա կերակրամանն ու անագե պատառաքաղը:

Եվ այսպես, երկուսով սկսեցին ուտել, տղան՝ պատուհանի մոտ կանգնած, իսկ Մարկովալդոն՝ նստարանի վրա, պատուհանի առջև: Յուրաքանչյուրը հաճույքից շուրթերը լիզելով մտածում էր, որ այդպիսի համեղ բան կյանքում չի կերել:

Բայց ահա տղայի թիկունքում հայտնվեց տնային դաստիարակչուհին:

— Սինյորի՛նո, աստվա՛ծ իմ, այս ի՞նչ եք ուտում,— բացականչեց նա, ձեռքերը տարածելով:— Ո՞վ է դա ձեզ տվել:

— Ա՛յ այն պարոնը,— ասաց տղան: Մարկովալդոն, որ մինչ այդ դանդաղ հանգամանալից ուտում էր, անմիջապես դադարեց ծամել:

— Այս ի՞նչ եմ լսում, տե՛ր իմ աստված, անմիջապես նետի՛ր:

— Ո՛չ, համեղ է:

— Որտե՞ղ են ձեր ափսեն և պատառաքաղը:

— Պարոնի մոտ,— պատասխանեց տղան և նորից ցույց տվեց Մարկովալդոյին, որը ուղեղի կտորը պատառաքաղի վրա պահած, քարացել էր տեղում՝ չկարողանալով կուլ տալ բերանում եղածը:

Տնային դաստիարակչուհին բացականչեց.

— Գո՛ղը, արծաթյա սպա՛սքը... բռնե՛ք սրան...

Մարկովալդոն վեր ցատկեց տեղից, մեկ անգամ ևս նայեց տապակած ուղեղի չկերած կտորին, պատառաքաղն ու ափսեն դրեց պատուհանի գոգին, մի սպանիչ հայացք նետեց դաստիարակչուհու կողմը և հեռացավ: Նրա հետևից լսվեց ասֆալտի վրա գլորվող կերակրամանի զնգզնգոցը, հետո բարձրաձայն լացի ձայն, փակվող փեղկերի շրխկոց: Մարկովալդոն թեքվեց և վերցրեց կերակրամանը: Հարվածից այն ծռմռվել էր, իսկ կափարիչը այլևս չէր պտտվում: Կերակրամանը գրպանը դնելով, Մարկովալդոն շտապեց գործի:

Իտալերենից թարգմանեց
**ՄԵՐՈՒԺԱՆ ՀԱԿՈԲՅԱՆԸ**



Նկ. Կարեն Սմբատյանի



**ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆ**

## Ո՞րն հարգենք

Բոլորս նույն օդն ենք շնչում,
բոլորիս է
շոյում արևն իր ջերմությամբ,
լույսն ամեն օր տալիս ողջույն,
չար ու բարի չեն հարցնում
    օդ ու արև,
լույս ու երկինք,
և ծառայում են անտրտունջ,
որ իրենց պես բարի լինեն
    բոլոր մարդիկ,
անկողմնակալ, անշահ, ներող...
Տիեզերքի բարությունն են
մեզ շնորհում ամեն մի օր....
Եվ բնության մեջ ինչ էլ կա,
հարազատ է

մեր մարմինը լինելու չափ՝
քար ու ծաղիկ,
պտուղ ու հող...
Մեր մեջ կան և կենդանիներ՝
աղվես, առյուծ,
իշուկ, սողուն կամ աղավնի,
և ում ընտրենք, սրտերը մեր
մի օր նրան կնմանվեն:
Է՞հ, ո՞րն ընտրենք,
պարզ է՝ բարին,
բայց ինչո՞ւ է չարին թեքված
կեսն աշխարհի:
Լավն ասում ենք,
վատը՝ անում
ու ընկնելով փորձանքի մեջ
հետո՞ ինչու ենք զարմանում:

Եկեք սիրենք,
սերն է ակունքն ամեն լավի,
եթե սիրենք,
ոչ մի արատ մեզ չի գերի...
Եկեք սիրենք
ընկերոջը մեր անձի պես,
ասա՛, ինչպե՞ս...

Նախ, ընկերդ նա է, ով որ
միշտ իրենը զոհում է քեզ,
ու աննկատ,
և դու գիտես,
թե գովասանք ստանալու
համար չէ այդ...
Եկեք ոչ թե
հանգիստ նստենք ու սպասենք
այդպես մեկի հայտնվելուն,
այլ ինքներս լինենք այդպես,
և կլցվի մեր կյանքն անթիվ ընկերներով
պարզասիրտ և պայծառերես...
Ինչ-որ բանով ավե՞լ ենք մենք
մեկս մեկից—
այդպես էլ կա,
ամեն մի մարդ աշխարհ է մի
և երկուսին չենք էլ գտնի նույն տեսակի...
Ինձնից ինչով որ ավել ես՝
ես եմ պակաս,
և ինչով որ ես եմ ավել՝
պակաս ես դու,
և այն բանի համար է այս,
որ ինձ օգնես քո ավելով,
իմով՝ ես քեզ,
և բարության արդյունքն այստեղ
սերն է, գիտե՞ս...
Սերն է քնած հերոսը մեր,
բարի լինենք, որ արթնանա:
Սերն է քնած հերոսը մեր,
չնա մի բան,
որն կյանքում չհաղթի նա...



ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆ

# Փոքրիկ ձկնորսը

— Ձկնի՛կ, ու՞ր ես, ու՞ր, չկաս,
Ո՞ւր ես ու ե՞րբ պիտի գաս,
Մամռի տա՛կ ես, թե՞ խորքում,—
Փոքրիկ ձկնորսն էր երգում:—
Անշնորհքիդ ի՞նչասեմ,
Ես քեզ ինչքա՞ն սպասեմ,
Ասին՝ գետում հորդացած
Դու մնացել ես սոված,
Ես էլ երկար թափառել,
Որդ ու բզեզ եմ ճարել,
Ծիծառն ուզեց, չտվի,
Սարյակն ուզեց, չտվի,
Փեշի տակից մեծ քարի
Դե շու՛տ արա, դու՛րս արի...
Տա՛ր քո որդը, գնամ տուն,
Արդեն եղավ իրիկուն...—
Կարթի ձողը իր ձեռքում
Փոքրիկ ձկնորսն է երգում:

# ԲԱԳԱ



ՍԵՐԳԵՅ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Աշխարհի խոշորագույն բռնապետություններից մեկը՝ Արաբական խալիֆայությունը, որի ներքո էր նաև Հայաստանը, 9-րդ դարում ճգնաժամ էր ապրում և գնում դեպի քայքայում ու անկում: Խալիֆայության դեմ հուժկու ապստամբություններ բարձրացան Եգիպտոսում, Իրաքում, Իրանում և Անդրկովկասում, ընտեղծվեցին տարբեր կիսանկախ ու անկախ ամիրայություններ, իշխանություններ, պետություններ: Արաբական տիրապետության ողջ ընթացքում Հայաստանում ևս չէին դադարում ժողովրդական ազատագրական շարժումները: 9-րդ դարում հատկապես հուժկու էին Հայաստանի հարավային շրջաններում ծագած ապստամբությունները, քանզի այդ շրջանները առավել շատ էին տուժում արաբական հարձակումներից ու սոսկալի ավերածություններից:

Այստեղ Բագրատ Բագրատունու, Արծրունի իշխանների գլխավորությամբ հայկական զորքերը ջախջախեցին Վասպուրական և Տարոն խուժած արաբներին: Հսկայական էր նաև Հովնան Խութեցու գլխավորությամբ սասունցիների և խութեցիների ապստամբությունն ու Մուշ-Տարոնում արաբական զորքի պարտությունը: 850—52 թթ. ժողովրդական հուժկու ապստամբությունները ու արաբների դեմ մղված քառամյա պատերազմը Հայաստանի ուժերի կենսունակության ապացույցն էին:

Այս դարաշրջանում երկրի հասարակական-քաղաքական և ռազմական կյանքում խիստ մեծացել էր Բագրատունիների դերը: Նրանց տիրույթները ընդգրկում էին երկրի մի զգալի մասը՝ Շիրակը, Վանանդը, Տաշիրը, Կոգովիտը, Բագրևանդը, Տարոնը, Սասունը, Վասպուրականի մի հատվածն ու Մոկաց աշխարհը: Նրանց ազդեցության ոլորտում էին գտնվում նաև Այրարատի կենտրոնական և հյուսիսային գավառները:

# ՐԱՂ





Երկրի անկախության ճանապարհին խոշոր քաղաքական հաջողություն էր 855 թ. Աշոտ Բագրատունու սպարապետ դառնալը, չորս տարի անց նա խալիֆայի կողմից ճանաչվեց Հայաստանի իշխանաց իշխան, ևս երեք տարի, և նրան հանձնվեց երկրի հարկահանությունը: Այդ շրջանում զգալիորեն նվազեց երկրից գանձվող հարկերի քանակը. 8-րդ դարի վերջերին վճարվող 18 միլիոն դիրհեմի փոխարեն այժմ արդեն Արմինիայից գանձվում էր 4 միլիոն դիրհեմ: Բնականաբար, մնացող միջոցները նպաստում էին երկրի տնտեսական և ռազմական վերելքին: Իհարկե, այսպիսի հսկայական զիջողություններ խալիֆայությունն անում էր՝ հաշվի առնելով ստեղծված իրավիճակը և, որ ամենակարևորն է, Հայաստանի ռազմունակությունը: Այս շրջանում Բագրատունիների բանակը հասավ 40 հազարի. իր ժամանակի համար սա բավականին մեծ ուժ էր:

Արաբական խալիֆայության և Բյուզանդիայի միջև շարունակվող անզիջում պայքարի իրավիճակում մեծանում էր Հայաստանի դերը: Եվ պատահական չէր, որ Բյուզանդիայի գահին բազմելով, հայազգի Վասիլ Ա կայսրը, Մակեդոնական կամ Հայկական դինաստիայի հիմնադիրը, 876 թ. Հայաստան է ուղարկում իր պատվիրակին և խնդրում, որ ինչպես Արշակունիների ժամանակ, երբ Բագրատունիները թագադիր ասպետներ էին, այժմ էլ, ավանդույթի համաձայն, Աշոտ Բագրատունին թագ ուղարկի իրեն:

Ծուտով Աշոտ Բագրատունու իշխանությունն այնքան հզորացավ, որ նա փաստորեն դարձել էր երկրի լիիրավ տերը: Եվ արաբական խալիֆին մնում էր նրան Հայաստանի թագավոր ճանաչել և թագ, թագավորական զգեստներ, զենքեր ու գրահներ ուղարկել: Այսպես, 884 թ. կամ 885 թ. հայոց երևելիները թագադրում են Աշոտ Բագրատունուն, և Արշակունիների անկումից չորսուկես դար անց կրկին Հայաստանը վերագտնում է իր պետականությունը:

Հայոց թագավորի վարչաքաղաքական իրավասության մեջ էին նաև Արևելյան Վրաստանը և Աղվանքի մի մասը: Աշոտ Բագրատունու գերադասությունն էին ընդունում վրաց գահերեց իշխան Ատրներսեհը և Աղվանից Համամ թագավորը, Հայաստանի հաբավում կազմավորված արաբական ամիրայությունները:

Նորաստեղծ Բագրատունյաց թագավորությունը պետք է որ ունենար իր մայրաքաղաքը: Չնայած Արշակունիների մայրաքաղաք Դվինը շարունակում էր մնալ Հայաստանի մեծագույն քաղաքներից, բայց արաբների ձեռքին էր և մշտապես գտնվում էր Ատրպատականի հարձակման վտանգի տակ:

Բագրատունիները մայրաքաղաք են ընտրում Բագարանը, որը գտնվում էր Արշարունիք գավառում, Ախուրյանի աջ ափին: Հայաստանի հնագույն բնակավայրերից էր այն, հիմնադրել էր դեռևս





Երվանդ Վերջինը, մ.թ.ա. 2-րդ դարի սկզբին, իր նոր մայրաքաղաք Երվանդաշատի հետ միաժամանակ: Նա այնտեղ մեհյաններ է կառուցել, ապա Արմավիրից փոխադրել բոլոր կուռքերը, տընկել տվել մի մեծ անտառ, որը ամրացրել է պարիսպներով և բազմաթիվ արագավազ այծյամներ, եղնիկներ, եղջերուներ ու վարազներ արգելափակելով՝ վերածել արքունի որսատեղի և կոչել Ծննդոց անտառ: Բագարանում էր բնակվում թագավորի եղբայր, քրմապետ Երվազը իր 500 ծառաներով: Բայց շուտով Արտաշես Առաջինը, հաղթելով Երվանդին, Բագարանի մոտ վզից երկանաքար կապելով, գետի հորձանուտում խեղդել է տալիս նրա եղբորը՝ Երվազին, բազում գանձեր վերցնում մեհյաններից, իսկ հետագայում կուռքերը տեղափոխում Արտաշատ:

Բագարանում կյանքը, սակայն, կանգ չի առնում, մինչև 8-րդ դարը Արշարունիքի քիչ թե շատ մեծ բնակավայրերից էր և Կամսարական նախարարական տան սեփականությունը: 780-ական թվականներին անցնում է Աշոտ Մսակեր Բագրատունուն, որը իր նստավայրը Դարույնքից տեղափոխում է այստեղ: Բագրատունյաց թագավորության ստեղծումից հետո մայրաքաղաք դառնալով, Բագարանը երկրի ամուր բերդերից էր, ուներ հաստ պարիսպներով միջնաբերդ, որի շուրջը տարածված էր ոչ մեծ քաղաքը: Բագարանում էին ոչ միայն Բագրատունիների ապարանքները, այլև տոհմական դամբարանը: Այստեղ կային նաև մի քանի եկեղեցիներ՝ Ս. Թեոդորոս, Ս. Գևորգ, Ս. Շուշան և այլն, որոնցից հատկապես նշանավոր է Ս. Թեոդորոս եկեղեցին (631 թ.) որը բազում արհավիրքների դիմանալով, մինչև մեր դարի կեսերը կանգուն էր: Այն հայ ճարտարապետության գանձերից է և ըստ մի շարք հեղինակավոր ուսումնասիրողների՝ նախատիպն է 9—10-րդ դդ. բյուզանդական, ֆրանսիական և իտալական մի շարք նշանավոր կոթողների:

Բագարանը կարճ ժամանակ միայն մայրաքաղաք եղավ և դա էր պատճառը, որ ոչ միայն չունեցավ համահայկական նշանակություն, այլև որպես քաղաք չընդարձակվեց և շատ բաներով զիջում էր իր ժամանակի մյուս քաղաքներին:

Բագրատունյաց թագավորությունը իր գոյության շուրջ 160-ամյա պատմության ընթացքում 4 մայրաքաղաք փոխեց, և Բագարանին հաջորդելու եկան Շիրակավանը, Կարսը, ապա և Անին:

Ինչևէ, եթե Բագրատունյաց թագավորության տարիները քաղաքի ծաղկման շրջանն էր, ապա թագավորության անկումից ընդամենը երեք տարի անց՝ 1048-ին Բագարանը զավթեցին, ավերեցին և բնակիչներին կոտորեցին սելջուկները: 12-րդ դարում այն անցավ Շահ Արմենների ձեռքը, 1211-ին Բագարանը ազատագրեցին հայ-վրացական զորքերը: Ինչպես Հայաստանի համարյա բոլոր քաղաքների, այնպես էլ Բագարանի համար ճակատագրական եղավ Լենկթեմուրի հրոսակների հարձակումը. 1394-ին քաղաքն ավերվեց և կողոպտվեց: Բայց կրկին այնտեղ բոցկլտաց կյանքը և նորից շունչ առավ հին Բագարանը: Այն վերջնականապես լքվեց ու ավերվեց Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին, իսկ նրա հրաշքով փրկված բնակիչները 1918-ին գաղթեցին և բնակություն հաստատեցին ՀՍՍՀ Հոկտեմբերյանի շրջանում, Արաքսի ձախ ափին, ներկայիս Բագարան գյուղում:

Այսօր էլ պատմական Բագարանի տեղում պահպանվել են նրա ավելի քան երկուհազարամյա պատմության ընթացքում կառուցված բազմաթիվ շինությունների՝ պարիսպների, բուրգերի, ամրոցների, կամրջի, տների, գերեզմանոցների ու եկեղեցիների հետքեր:




# «Շնորհակալությո՛ւն, փեսուչ»

Վարորդը կտրուկ արգելակեց: Ավտոմեքենան ընթանում էր մեծ արագությամբ: Ասֆալտի վրա հետքեր թողնելով՝ մեքենան սահեց մի քանի մետր և կանգնեց:

Կարմիր թևկապով տղան մոտեցավ, պատվի առավ.

— Պատանի ավտոտեսուչ Արա Հակոբյան: Դուք խախտել եք երթևեկության կանոնները: Խնդրում եմ ձեր փաստաթղթերը:

— Տե՛ս է,— քմծիծաղեց վարորդը,— կատակելու ժամանակ է գտել: Հապա մի կո՛ղմ քաշվիր ճանապարհից:

Փոքրիկ ավտոտեսուչը բոլորովին էլ կատակելու տրամադրություն չուներ: Վարորդն անմիջապես գլխի ընկավ.

— Նե՛րի՛ր, ընկե՛ր պետ, —ժպտալով ասաց նա,— էլ չի կրկնվի... շտապում եմ:

Պատանին նկատեց, որ վարորդը հուզված է ու անհանգիստ և անընդհատ ետ՝ ճանապարհին է նայում: «Նրան հետապնդում են»,— մտածեց Արան:

Նա չէր սխալվել: Քիչ անց ավտոտեսչի մոտ էին պետավտոտեսչության աշխատակիցները:

— Շ ն ո ր հ ա կալությու՛ն, տեսու՛չ,— ասաց կապիտանը,— դու մեզ շատ օգնեցիր:

Ես պատմեցի մի փոքրիկ դեպք Երևանի Շահումյանի շրջանի պատանի ավտոմոտոսիրողների առօրյայից: Իրենց աշխատանքների մասին շատ ավելին կարող են պատմել Կիրովականի պատանի ավտոտեսուչները, Լենինականի փոքրիկ սանիտարները, Աբովյանի, Նաիրիի շրջանների պատանի հրաձիգները, խաչմերուկներում կարգ ու կանոն հաստատող դպրոցականները:

— Ճիշտն ասած, մինչև խմբակ գալը ես նրա անդամներին պարզապես պարծենկոտներ էի համարում,— ասում է Երևանի Շահումյանի շրջանի № 113 դպրոցի պատանի ավտոմոտոսիրողների խմբի անդամ Հուսիկը:—Փողոց էին դուրս գալիս զուգված-զարդարված՝ համազգեստով, կրծքանշանով, թևկապով... Խոստովանում եմ, գուցե և նախանձում էի: Իսկական ավտոտեսուչների նման հսկում էին երթևեկությունը, պարապմունքներ էին անցկացնում, սովորում էին վթարի դեպքում առաջին օգնությունը ցույց տալ... Խնդրեցի ինձ էլ ընդունել խմբակ: Չմերժեցին...

Իրենց օգնականներից դժգոհելու առիթ չունեն պետավտոտեսչության աշխատակիցները: Նրանք հաճախ են իրենց փոքրիկ գործընկերներին ասում.

— Շնորհակալությո՛ւն, տեսո՛ւչ:

ՊԱՎԵԼ ՂՈՒԿԱՍՅԱՆ

ԱՐՏԱՇԵՍ ՂԱԶԱՐՅԱՆ

# ԵՐԿՈՒ ՆՈՒՆՈՒՖԱՐ

Նունուֆար փոքրիկ աղջիկը մի օր,
Տնից դուրս գալիս, բարձրանում է սար,
Տեսնում է ծաղիկ մի ճերմակաշոր,
Որ գլխին ուներ ոսկեգույն պսակ:

— Ծաղի՛կ իմ սիրուն, անունդ ի՞նչ է,—
Աղջիկը հարցնում է նրան շշուկով:
— Ինձ Նունուֆար է մայրիկս կոչել,—
Պատասխանում է, օրորվում շուքով:

— Իմ անունն էլ է Նունուֆար, գիտե՞ս,
Այո՛, ազնիվ խոսք, հո քեզ չե՞մ խաբում...
Այս ի՞նչ հրաշք է, որ սարում այսպես,
Նունուֆարները են իրար հանդիպում:

Եվ այսքան հեռվում հանդիպում նրանք,
Մտերմանում են, քաղցր զրուցում,
Իսկ երբ որ օրը իրիկնանում է,
Սարից միասին ներքև են իջնում:



Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

Մեր դասարանը բաժանվել էր երկու բանակի և պատճառը այն էր, որ ես և իմ ընկերուհին խռովել էինք: Եվ խռովելու պատճառն էլ այն էր, որ մի անգամ, երբ ընկերուհիս ասաց. «Իգուր ռուսաց լեզվի դասը չհարցրեց, թե չէ «5» կստանայի»,— ես և Շուշանիկը ծիծաղեցինք: Բայց մենք ոչ թե նրա վրա ծիծաղեցինք, այլ այդ պահին տեսանք, որ ցածր դասարանցիներից մեկը ձեռքի թղթերը պատառոտելով լցրեց ընկերոջ գրպանը, իսկ ընկերը, չիմանալով թե ինչ է, շնորհակալություն հայտնեց:

Խռովելուց հետո դասարանի մի մասը իմ կողմն էր պահում, մյուսը՝ ընկերուհուս: Ուսուցչուհին իմացավ և միջամտեց: Ես ստեցի, ուսուցչուհուս ասելով, թե իբր ընկերուհիս է սովորեցրել, որ դասարանցիների մի մասը ինձ հետ խռովի:

Ընկերուհիս վիրավորվեց ու լաց եղավ: Ընկ. Մանուկյանն էլ հանդիմանեց թե՛ ինձ և թե՛ մյուսներին:

Ես փոշմանեցի, այո, փոշմանեցի, չէ՞ որ վիրավորեցի ընկերուհուս և դեռ ավելին, ուսուցչուհուս խաբեցի:

Ընկ. Մանուկյանը մեզ պատվիրեց հաշտվել, և մենք հաշտվեցինք: Եվ ես ընկերուհուցս ներողություն խնդրեցի:

ՆԱՐԻՆԵ ՂՈՒԿԱՍՅԱՆ
Հոկտեմբերյանի շրջ․,
Նոր-Կեսարիա գյուղի
դպրոց

## ԻՐԵՆՔ ԻՐԵՆՑ ՄԱՍԻՆ



Ես և Սիմոնը մտերիմ ընկերներ էինք։ Հաճախակի իրար տուն էինք այցելում և միասին սովորում դասերը։ Երկուսս էլ դասերը սովորելուց հետո սիրում էինք ֆուտբոլ խաղալ։ Բայց պատահեց մի դեպք, որի հետ ես դժվարանում եմ հաշտվել։ Ֆուտբոլի դասարանական մրցումների ժամանակ, երբ մեր դասղեկը տասնմեկ լավագույն խաղացողների մեջ ընդգրկեց նաև ինձ, Սիմոնը դժկամություն հայտնեց, իսկ խաղից հետո Սիմոնից բացի բոլորը գոլ խփելուս համար։ Ինձ գոլ խփելու առթիվ։ Ինձ թվում է, իսկական ընկերները պետք է ուրախանան միմյանց հաջողություններով։ Իսկ Սիմոնի վերաբերմունքն ինձ համար մնաց անհասկանալի և չգիտեմ, կարելի՞ է նրան իսկական ընկեր համարել։

**ԱՐՏԱՇԵՍ ՄԿՐՏՉՅԱՆ**
Եղեգնաձորի շրջան, գ. Արենի, 7-րդ դաս.

Երբ նայում եմ տատիս, նրա բարի աչքերին, ինձ թվում է, աշխարհի բարությունն ու քնքշանքը նրա հոգու մեջ է, նրա իմաստուն խոսք ու խրատի ծալքերում։ Տատիս ներկայությամբ ոչ մեկը մյուսին չի վիրավորում, կարծես նա մեր տան արդարության ու խղճի կշեռքը լինի։ Հայրըս հողագործ է, իր գործին հմուտ գիտակ։ Սիրում է հողը, գիտի ծառերի լեզուն ու այդ սերն էլ փոխանցվել է մեզ՝ երեխաներիս։ Մայրս միշտ հեզ ու հնազանդ է, գիջող ու համբերատար։ Ես անխզելի թելերով կապված եմ նրան և չեմ պատկերացնում իմ կյանքը առանց նրա։ Չգիտեմ էլ ինչպես բացատրեմ, թե որքան լավն է նա ու սիրելի։ Ահա նա շուտով կլինի 40 տարեկան։ Միշտ հարգանքով է վերաբերվում մեծերին և մանուկների լեզուն էլ լավ է հասկանում։

Երեք եղբայր ունեմ։ Մեծը մեծ շնորհքի տեր է։ Նրա մասին միշտ լավ են խոսում և հաճախ էլ ասում են. «Ոսկի ձեռքեր ունի, լավ մարդ է դառնալու»։ Սովորում է 10-րդ դասարանում, լուրջ տղա է, տան հոգսով մտահոգվող։ Մեծ եղբորս հակապատկերն է միջնեկ եղբայրս։ Միշտ ալարում է, ծուլանում, կոլեկտիվ աշխատանքի ժամանակ գրքույկ պահում։ Փոքրը՝ չարաճճի է ու յուռի։ Շատ է սիրում խնամել անասուններ։ Զբաղվում է նաև սպորտով, ճկուն է ու առողջ։

Ես սիրում եմ գիրք կարդալ, զբաղվել սպորտով, սիրում եմ գրականությունն ու պատմությունը, մեկ խաղաղ ու մեկ անհանգիստ գյուղական կյանքը։

Մեր ընտանիքում անտես յույսի պես մեր հոգիներն են ջերմացնում տատս ու ծնողներս, և մեր մանկությունն է՛լ ավելի է սիրելի դառնում նրանց բարի-բարի խրատներից ու ջերմ վերաբերմունքից։ Երբ երեկոները նստած սեղանի շուրջը խոսում ենք այդ օրվա անցուդարձից, տատս ձեռքն է առնում պապենական շերեփը։ Ճաշը տատիս գոգնոցի բույրն է ունենում, մայրիկիս ձեռքերի ջերմությունը։

**ՎԱՐՍԻԿ ՎԱՐԴՈՒՄՅԱՆ**
Թումանյանի շրջ., Ճոճկան գյուղի դպրոց, 9-րդ դաս.

## ԱՐՁԱԳԱՆՔՈՒՄ ԵՆ ՏՊԱԳՐՎԱԾԻՆ



Կրիային ջրի են ուղարկում, կարգադրում, որ շուտ վերադառնա, չուշանա: Կուժը շալակում և ճամփա է ընկնում: Կրիայի քայլերով արագ գնում, մինչև հասնում է ջրին ու վերադառնում, մի տարի է քաշում:

Հաջորդ տարվա գարնանը հազիվ տեղ է հասնում, բայց առանց կժի:

— Հա կուժն ու՞ր է, ջուրն ու՞ր է,— հարցնում են բարկացած:

— Ձեր տունը շինվի,— պատասխանում է կրիան,— էնքան ասիք՝ շուտ արի, չուշանաս, դե ես էլ շտապեցի, որ չուշանամ, շտապելուց սայթաքեցի, կուժն ընկավ կոտրվեց...

● Մի լոռեցու մի հանցանքի համար երեք տարով բանտ էին նստեցրել: Երեք տարին անցնելուց հետո ազատվում է, գլուխը կախ, փոշմանած, ամաչելով վերադառնում է գյուղ:

Դեռ գյուղ չհասած, ճանապարհին սրան հանդիպում է ծանոթ մեկը.

— Վա՜յ, բարո՜վ, բարո՜վ, Արտու՜շ ջան,—ասում է:— Այ՜տա իմացա, որ քեզ բանտարկել են. ապաշխարանք ըլի, էտ ի՞նչ էր պատահել:

— Հե՜չ,— ասում է,— Աբե՜լ ջան, գլուխս քարովն էի տվել, մի թոկ էի գողացել:

— Ա՜յ տա, ի՞նչ ես շաշումաշ խոսում, մի թոկի համար իրեք տարով կբանտարկե՞ն:

— Դրուստն ասած՝ մենակ թոկր չէր, Աբե՜լ ջան,— թուքը կուլ տալով ասում է Արտուշը,— ծերին էլ մի մոզի կար:


ՆԿ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

Հովիվ էր Սիրակը: Աշխարհը նրա համար սար էր, սարից էն կողմ էլի սար էր, էն սարից էն կողմ էլի սար էր: Գյուղ իջնում էր հազարից մեկ: Որ իջնում է, ուրեմն գործ կա, շուտ պիտի իջնի, էլի շուտ բարձրանա: Մոտի փողը շատացել էր, չուզեց ձեռքից ձեռք անցնի: Սարում փող պահել չի լինի: Դե, առնելիք չունեն, տալիք չունեն: Երեխաներր մեծանում են: Ի՞նչ կլինի, որ կնոջ աչքից թաքուն մի քիչ փող ունենա: Վաղր կարող է անսպասելի պետք գալ: Ամենավստահելի մարդը դուրս է գալիս նա, ում առաջինն է հանդիպում: Խոսելով, զրուցելով, հին ու նոր, սար ու ձոր իրար խառնելով տուն են մըտնում: Մեկ էլ Սիրակս թողնում է իր զրույցի տուտն ու ձեռքը տանում գրպանը, հանում փողը, դնում սեղանին.

— Էս փողր պահիր մոտդ, մի օր մի ցավի ոտ կոտրելու պետք կգա: Երեխեքը մեծանում են:

Վստահելի մարդր նախ զարմանում է, թե ինչու՞ պետք է էսքան փողը իրեն վըստահի, երբ նա տունուտեղ ունի, երբ հենց գյուղում կա խնայդրամարկղ, երբ... Բայց նայելով Սիրակի համառ դեմքին, ձեռքր տանում է փողի կույտին, իրենից անկախ սկսում հաշվել: Հաշիվր մտքում իմանալով, հարցնում է.

— Ինչքա՞ն է:

— Ի՞նչն է ինչքան,— միամիտ ասում է Սիրակը:

— Քո փողը, որ ինձ պահ ես տալիս՝ էս փողը:

— Էդքան է, էլի՜:

— Բայց քո հաշվով ինչքա՞ն է:

— Ես չեմ հաշվել, հաշիվն ի՞նչ ենք անում:

Վստահելի մարդր հաշվում է, նորից է հաշվում: Ապա վերցնում է թուղթ ու գրիչ ու գրում. «Ես՝ Ծոթի գյուղի բնակիչ Ավետիք Ենոքի Բաղալյանս, իմ համագյուղացի ընկեր Սիրակ Վահանի Առաքելյանից վերցրել եմ ինձ պահելու հանձնած փողր ընդհանուր գումարով երկու հազար յոթ հարյուր հիսունինր ռուբլի (նույն գումարը թվերով՝ 2759 ռուբլի), որը կվերադարձնեմ պատկանելույն առաջին իսկ պահանջի դեպքում: Ստացականր գրված է իմ ձեռքով, որի համար ստորագրում եմ»: Կարդում է գրածր: Սիրակր չի էլ լսում: Իսկ Ավետիք Ենոքի Բաղալյանը շատ խնամքով և ուշադիր երկրորդ օրինակն է գրում, դնում իրար կողքի, նայում,

ՀՐԱՆՏ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ

# ՀՈՎԻԿ ՍԻՐԱԿԻ ՓՈՂԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ

ոչ մի տողի ու տառի տարբերություն չկա: Երկու ձվի նման իրար նման են: Նորից է բարձրաձայն կարդում: Ապա երկուսն էլ պահում է Սիրակի դեմ.

— Մեկ է, որը կուզես, վերցրու:

— Էդ ի՞նչ է, որ վերցնեմ:

— Ստացական: Իմ գրած ստացականները: Երկու օրինակ, որը կուզես վերցրու:

— Ստացական: Երկու օրինակ: Ախպոր բաժին: Մինը՝ ինձ, մյուսը՝ քեզ:

— Հենց էդպես: Օրենքն է ասում:

— Հա, որ օրենքն է ասում՝ մինը դեսը տուր:



Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Վերցնում է մի օրինակը, շնորհակալություն հայտնում, հրաժեշտ տալուց առաջ ձեռքի թուղթը մեկնում է Ավետիին, թե առ: Ավետը նայում է իրեն մեկնված թղթին, իր իսկ ձեռքով գրված թղթին՝ ի՞նչ սխալ է թույլ տվել: Քանի՞ տարի գյուղխորհրդի քարտուղար է եղել և մի սխալ բառ չի գրել, մի անընթեռնելի տառ չի գրել, հիմա էս ի՞նչ պատահեց: Հանում է դարակից ուրիշ շատ կարևոր թղթերի մեջ հենց նոր խցկած թղթի իր բաժին օրինակը և ժպտալով ասում.

— Ոչ մի տարբերություն: Ուզում ես սա վերցրու: Ոչ մի տառի ու տողադարձի տարբերություն չկա: Ամոթ չի՞...

— Առ ձեռքիցս էս էլ պահի, դու լավ կպահես: Ես սար ու չոլում, արևի ու անձրևի տակ որտե՞ղ պահեմ:

Ավետը չի հասկանում Սիրակին:

— Ա՜յ Սիրակ, ես քեզ երկար-բարակ ո՞նց բացատրեմ, որ դու ինձ փող ես պահ տվել: Որ դու անձրևի ու արևի, կարկուտի տակ չարչարվել ես, որ գիշերն աչք չես կպցրել, որ սա քո քրտինքի փողն է, որ մեկ էլ տեսար ի՞նչ պատահեց, իսկ մի գրած թուղթն ամենազորեղ վկայից էլ զորեղ է: Մարդ եմ, կարող է վաղը հրաժարվում եմ, ասում եմ՝ ա՜յ ցնդած, դու ինձ փող չես տվել, ես խնայդրամա՞րկղ եմ քեզ համար, ի՞նչ եմ, որ հազարներդ բերել ես ինձ պահ տվել: Սա իմ ստորագրությունն է, սա իմ արդար վկայությունն է, մի օրինակը՝ քեզ, մի օրինակը՝ ինձ: Թող երկուսս էլ հանգիստ լինենք...

Սիրակս էդ խոսքերի վրա ավելի է նեղվում.

— Ես քեզ հո բան չե՞մ ասում, Ավե՛տ ախպեր, բայց դու սարի կյանքը պետք է պատկերացնես. անձրևն եկավ, մտավ ծոցըս, մտավ գրպանս ու թրջեց, խճճեց գիրըդ, մի օր ծխախոտի թուղթ չունեցա, ձեռքս գրպանս եմ տանում ու քո տված թուղթն է պատահում, պիտի կտրեմ: Թութունը լցնեմ ու վառեմ: Ավելի լավ չէ՞, որ դու քեզ մոտ խնամքով պահես, ո՛չ անձրևն է ծոցդ մտնում, ո՛չ էլ ծխող ես...— ասում է ու իր սարի ճամփան բռնում:

Իսկ Ավետը իր գրությունները պահած ձեռքում՝ նայում է նրա թիկունքին, մինչև մարդը հալվում է հեռուներում...


Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

ՇԱՐԼ ՊԵՐՐՈ

# Երեք ցանկություն

Ո՞վ է, որ չի լսել կամ չի կարդացել Շարլ Պերրոյի «Կարմիր գլխարկը»: Ուրիշ շատ հրաշալի հեքիաթներ էլ է գրել Պերրոն՝ «Մոխրոտիկը», «Անտառի քնած գեղեցկուհին», «Մատնաչափիկը», «Կապույտ մորուքը» և այլն, որոնք վաղուց արդեն թարգմանված են հայերեն: Բայց միայն արձակ հեքիաթներ չի գրել Պերրոն: Տպագրում ենք նրա չափածո հեքիաթներից մեկի հայերեն առաջին թարգմանությունը, որ ֆրանսերենից կատարել է
ՀԱՅԿ ԴԱՎԹՅԱՆԸ:

Ասում են, իբրև, մի խեղճ փայտահատ ապրուստի կարոտ,
Զանձրացած իր զուրկ, իր աղքատ կյանքից,
Փափագում էր միշտ, թե ե՞րբ կգնա այս դառն աշխարհից
Հանգիստ առնելու Աքերոն գետի ափերի վրա, ոգիների մոտ:
Տրտնջում էր, թե բախտ չունի ինքը.
Թե ծնված օրից անցել են անհա այսքան տարիներ,
Բայց չի կատարել դաժան երկինքը
Թեկուզ մի չնչին ցանկությունը իր:
Մի օր էլ այսպես տրտնջում էր նա անտառում էլի,
Հանկարծ հայտնվեց Արամազդ աստվածն հուր շանթը ձեռին:
Դժվար է ասել, թե աստվածային տեսքից անռեղի
Ինչքան վախեցավ փայտահատը քեռին:
— Ոչինչ չեմ ուզում,— ծնկաչոք ասաց փայտահատը մեր,—
Ո՛չ շանթիր դու ինձ, ո՛չ էլ կատարիր ցանկությունը իմ,
Ու թող մեկմեկուց պահանջ չունենանք, տիեզերքի՛ տեր:
— Ո՛վ մարդ, մի դողա,— մռնչաց այստեղ Արամազդը գոռ,—
Եկել եմ վիշտդ փարատեմ այսօր,
Հերիք է, ինչքան գլուխս տարար գիշեր ու ցերեկ:
Ակա՛նջ դիր հիմա: Արար-աշխարհի տիրակալն եմ ես:
Ու խոսք եմ տալիս, որ եթե երեք ցանկություն հայտնես,
Երեքն էլ սիրով կատարեմ մեկ-մեկ:
Ասա այն, ինչ որ կգոհացնի քեզ,
Ինչը քո կյանքը երջանիկ կանի:
Բայց լավ իմացիր, քանզի ուզածդ դու պիտի վճռես,
Ասելուց առաջ մի լավ մտածիր, հետո ինձ հայտնիր:
Այս խոսքի վրա աստվածն Արամազդ երկինք վերացավ,
Իսկ փայտահատը ուրախ ու զվարթ, ընկած ոտ ու ձեռ,
Փայտը շալակեց, դեպի տուն դարձավ:
Իր օրում երբեք բեռն այդքան թեթև չէր թվացել դեռ:
Ու միտք էր անում քայլելով հանգիստ.
«Հեշտ գլուխ չի գա այս կարգի բանը,
Պետք է (և կետն այդ կարևոր է խիստ)
Կնոջս միտքն էլ իմանամ տանը»:

— Ա՛յ կին,— գոչեց նա ներս մտնելով տուն,—
Շտապ թեժացրու կրակն օջախում,
Սրանից հետո երջանիկ ենք մենք,
Միայն ցանկանանք, միայն թե ուզենք:—
Ու գլխին եկած դեպքը մեկ առ մեկ կնոջը պատմեց:
Երբ նրա կինը լսեց բոլորը՝ հազար երազանք,
Անթիվ տենչանքներ մտքի մեջ հյուսեց:

Ու հասկանալով, թե ինչ կարևոր դեպք է, մարդ ու կին
Վճռեցին խոսել մոտենալ գործին։
— Ա՛յ մարդ,— կինն ասաց,— իմ հոգու՛ հատոր,
Ինչու՞ անտեղի անհամբերությամբ գործը խափանենք,
Ամեն ինչ պետք է քննել հիմնավոր,
Այս պարագայում խելոք բան կանենք,
Երբ գիշերը մեկ էլ միտք անենք, գլուխ-գլխի տանք տաք օջախի մոտ,
Իսկ մեր առաջին ցանկությունն հայտնենք վաղը առավոտ։
— Շատ լավ, դեմ չեմ ես,— ասաց մարդը հեզ,—
Իսկ հիմա վեր կաց, մի գավ գինի տուր։—
Գավաթը առավ, խմեց ծարավից պապակված պես,
Թերվեց աթոռին՝ օջախի առաջ հարմար ու մաքուր,
Շունչ քաշեց խորունկ,—
Ի՜նչ կրակ է, է՜,— խոսեց կամացուկ,—
Ա՜յ թե մի կտոր տապակվող երշիկ կրակին լինեք։
Այս ցանկությունը խեղճ փայտահատը չէր ավարտել դեռ
Երբ կինը տեղում սառեց զարմացած.
Մի կտոր երշիկ՝ թիզ ու կեսի չափ,
Օջախի կողքից երևաց հանկարծ
Ու իրենց կողմը գալարվեց շտապ։
Քիչ մնաց կինը ընկներ ուշաթափ.
Բայց հասկանալով, որ կատարվածը
Իրենց խոստացած ցանկությունն է հենց,
Որ ամուսինը, այդ շվարածը,
Առանց խորհելու գլխից դուրս տվեց,
Էլ դառը անեծք, չոր խոսք չմնաց,
Որ բարկությունից դեպքին չկպցի
Ու անճար մարդու գլխին չթափի։
— Մի տես,— ասում է,— երբ կարող էին դառնալ գահի տեր,
Ձեռք բերել ալմաստ, ոսկի ու արծաթ,
Նախշուն հագուստներ, մարգարիտ ու սաթ,
— Մի տես,— ասում է,— երբ կարող էին դառնալ գահի տեր,
Նման ցանկություն հայտնելու համար եզ պետք էր լինել։
— Անե՜ծք,— մարդն ասաց,— անե՜ծք այս կյանքին,
Եվ այս երշիկին, որ անմեղ տեղը ինձ պիտի տանջեր,
Աստված եմ կանչել,
Քո քթին դիպչի այդ երշիկն, ա՜յ կին։—
Երկինքը իսկույն ունկնդիր եղավ աղքատի խոսքին,
Այս նոր խնդրանքը ավարտելուն պես
Երկար երշիկը՝ ուղիղ թիզ ու կես
Կպավ գազազած պառավ ... քթին։
Մարդը բարկացավ անսպասելի հրաշքից այս գեշ։
Մի սիրունատես կին էր իր կինը, շնորհով, շնորհքով,
Հիմա այդպիսի անճոռնի մի զարդ դեմքի այդ մասում,
Անհարմար դիրքով,
Բնավ չէր սազում։
«Ինչ խոսք, կարող եմ,— մտածում էր նա լուռ ու գլխիկոր,—
Այս աղետից ետ աղքատությանս մեկեն վերջ դնել,
Եվ ինձ մնացած երրորդ ցանկությամբ, որ դեռ չեմ հայտնել,
Մի ակնթարթում դառնալ թագավոր։
Թեև ճիշտ է, որ ոչինչ չի հասնի միահեծանի հզորությանը,
Բայց հարկավոր է մտածել նաև այսպիսի պահին.
Թե ինչպիսին է լինելու կինս՝ իմ գահընկերը և օգնականը.
Մի խոսեմ իր հետ, ի՞նչ կասի տեսնես,
Իմանամ որն է փափագը նրա.
Բազմել տիրական գահույքի վրա՞
Երշիկե երկար քթով թիզ ու կես,

Թե՞ էլի մնալ մի աղքատի կին
Այն սովորական քթով մարդկային,
Որ ուներ ինքը նախքան փորձանքն այս»:
Ու մտածում է կինը, մտածում...
Նա շատ լավ գիտեր թագավորական ճակատի ուժն ու ազդեցությունը,
Եվ այն, որ երբ մարդ գահ է բարձրանում,
Չեն տեսնում քթի կարճությունը կամ երկարությունը,
Սակայն, քանի որ դուրեկան տեսքն է հարգի ամեն տեղ,
Ուզեց պահպանվի անցած օրերի գեղեցկությունը,
Քան թե թագուհի դառնա, բայց տգեղ:
Ու փայտահատի աղքատիկ կյանքում ոչինչ չփոխվեց.
Ո՛չ արքայական գահույքին բազմեց,
Ո՛չ էլ մի կոպեկ քսակը մտավ,
Եվ ուրախ էր շատ, որ դեռ մնացած երրորդ ցանկությամբ
Նորից իր խղճուկ բախտին տիրացավ՝
Կնոջը տեսավ առաջվա դեմքով ու գեղեցկությամբ:

## ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

ԿԻՐԱԿՈՍՅԱՆ ԼՈՒՍԻՆԵ
Էջմիածնի շրջ. գյուղ Ապագա

«Ծաղրածու»



ՊԵՏՐՈՍՅԱՆ ԱԼԵՆԱ
Սիսիան № 3 միջն. դպրոց
4-րդ դաս.

«Նատյուրմորտ»



ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ




— Քո գլխարկից ինձ էլ առ,—
Տղան ասաց հայրիկին,—
Որ երբ քայլեմ փողոցով,
Ասեն՝ նայեք փոքրիկին,
Շատ նման է հայրիկին:

Հայրիկն ասաց.— Ա՜յ Գնել,
Թե որ գնեմ մեծ գլխարկ,
Քամին կառնի կտանի,
Դու կմնաս անգլխարկ
Անձրևի ու ձյունի տակ:

Գնելն ասաց.— Ա՜յ հայրիկ,
Գլխարկն է մեծ, ես՝ փոքրիկ,
Թե գլխարկը փախցնի,
Ինձ էլ իր հետ կտանի,
Ես կմնամ գլխարկով
Անձրևի տակ ու ձյունի:

# ԹՈՒՆԱՎՈՐ ՍՆԿԵՐ

Թունավոր սնկերից են ճանճասպանները, հեբելոման, կեղծ կոճղասնկերը, նեմատոլոման, հովանոցասնկերը, ռոդոֆիլուսը:

Ճանճասպանները լինում են դեղին, կարմիր, մոխրագույն, սպիտակ, ծիրանագույն: Դրանց բազմագույն գլխիկները ծածկված են ճերմակ, կլորավուն գորտնուկներով (սպիտակ ճանճորսը գորտնուկներ չունի): Գլխարկի տակ թիթեղները ազատ են և սպիտակ, ոտքը նույնպես սպիտակ է, ներքևում՝ պալարաձև: Փափկամիսը (միջուկը) սպիտակ է և բողկի հոտ է արձակում: Դեղին ճանճասպանը հանդիպում է Ղափանի կաղնու և բոխու անտառներում: Կարմիր ճանճասպանը տարածված է լեռնային գոտու փշատերև և սաղարթավոր անտառներում, խիստ թունավոր է: Մոխրագույն ճանճասպանը աճում է Ստեփանավանի, Կալինինոյի, Կիրովականի խառը և փշատերև անտառներում: Ամենաթունավորը սպիտակ ճանճասպանն է, որը հանդիպում է Կիրովականի և Ստեփանավանի լայնատերև անտառներում: Թունավոր է նաև ծիրանագույն ճանճասպանը, որը հանդիպում է Ծաղկաձորի անտառներում:

Հոբելոմայի գլխարկը դեղնագորշավուն է, սկզբում՝ ուռուցիկ, ավելի ուշ՝ հարթ, 4—8 սմ տրամագծով, քիչ յուրձուտ և դեպի ցած շրջված եզրերով: Թիթեղները խիտ են, սպիտակ, ավելի ուշ՝ գորշ մոխրավուն: Հանդիպում են Իջևանի, Ստեփանավանի, Կիրովականի սաղարթախիտ անտառներում:

Ծծմբագույն կեղծ կոճղասունկն ունի մոխրադեղնավուն, կենտրոնում կարմրավուն երանգներով, մսոտ գլխարկ, 3—6 սմ տրամագծով: Թիթեղներն սկզբում ծծմբագույն են, այնուհետև կանաչավուն, ավելի ուշ՝ սև ձիթապտղի գույնի: Աճում է փտած փայտի և կոճղերի վրա, խոշոր խմբերով՝ Իջևանի, Ստեփանավանի և Կիրովականի շրջաններում: Չափազանց թունավոր է:

Նեմատոլոմայի մսոտ գլխարկը ուռուցիկ է, գագաթը՝ բութ սապատավոր, 5—10 սմ տրամագծով: Գեղեցիկ աղյուսագույն կարմիր երանգով: Եզրերը բաց դեղնավուն են: Աճում է սաղարթավոր ծառերի բների վրա և դրանց շուրջը՝ մեծ խմբերով, Ստեփանավանի և Շամշադինի շրջաններում:

Շագանակագույն հովանոցասունկը քիչ է հանդիպում: Ուռուցիկ, կլոր գլխարկը 3—4 սմ տրամագիծ ունի և շագանակագույն է: Միջուկը սպիտակ է, իսկ մաշկի տակ՝ կարմրավուն: Թիթեղները դեղնավուն են և ազատ դասավորված: Ոտքը նույնպես շագանակագույն է, ունի փաթիլաձև թեփուկներ և սպիտակ, նեղ օղ:

Ռոդոֆիլուսը մսոտ և փայլուն, մի փոքր ուռուցիկ, սպիտակ գույնի, 4—7 սմ տրամագծով սունկ է: Գլխարկի տակ թիթեղները հպված են ոտքին, լայն են, նոսր և սպիտակ, ավելի ուշ՝ կարմրավուն: Սպիտակ ոտքը երբ սեղմում ենք՝ գորշ երանգ է ձեռք բերում: Սպիտակ միջուկը ալյուրի թույլ հոտ ունի: Աճում է Թումանյանի շրջանի լայնատերև անտառներում:

Կարմրամանուշակագույն կոճղասունկը ունի ուռուցիկ (հետագայում հարթ) 2—7 սմ տրամագծով, կենտրոնում՝ նարնջագույն-կարմրավուն, եզրերում ավելի բաց, գրեթե դեղին կամ կանաչ գլխարկ, որի խոնավ եզրերը երբեմն ծածկված են լինում թեփուկներով կամ փաթիլներով: Դառնահամ է: Մեծ առատությամբ աճում է Կիրովականի շրջակայքում:

Դժբախտ դեպքերից խուսափելու համար անհրաժեշտ է լավ ճանաչել թունավոր սնկերը: Խորհուրդ է տրվում պիոներական արշավների մեկնելիս արշավի բոլոր մասնակիցներին ծանոթացնել թունավոր սնկերի արտաքին նշանների հետ և սնկերը հավաքելուց հետո կրկին և կրկին ստուգել դրանք, լրիվ համոզվելու համար, որ թունավոր կամ վնասակար չեն:

ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
կենսաբանության դոկտոր, պրոֆեսոր



# ԱՄԵՆԱ ԹԱՆԿԸ



Սովորաբար ասում են՝ «Տուր այդ դատարկ բաժակը» կամ՝ «Բեր այն դատարկ դույլը», բայց իրականում դրանք դատարկ չեն, այլ լի են անգույն ու բնական «կոկթեյլով»՝ օդով, որից մարդը մեկ րոպեում «ըմպում է» 12 լիտր, այսինքն՝ օրը 17 խոր. մ (22 կգ-ից ավելի): Այո, բնության ամենազարմանալի հրաշալիքներից մեկն է մեզ շրջապատող օդը, որի քանակը հասնում է ահռելի չափերի՝ մոտ $5,1.10^{13}$ մեգատոննի: Բայց չնայած դրան, այժմ արդեն որոշ արդյունաբերական զարգացած քաղաքներում օդն այնքան է կեղտոտված, որ մարդիկ ստիպված ժամանակ առ ժամանակ մտնում են հատուկ հերմետիկ խցիկներ, որպեսզի շնչեն մաքուր «անտառային» կամ «ալպիական» օդ, իհարկե, դրա համար վճարելով:

Այսպիսով, հետզհետե օդը, որն օգտագործվում է իբրև նաև տեխնիկական հումք, դառնում է առուծախի առարկա, չէ՞ որ, եթե մարդն առանց ջրի ու սննդի ընդունակ է ապրելու որոշ ժամանակ, ապա առանց օդի ամենավարժ մարգարիտ որսողն անգամ մի քանի րոպե է միայն դիմանում:

Օդը մեր երկրագունդը պատում է շատ լավ ուսումնասիրված, հազար կիլոմետրանոց շերտով, որը կոչվում է մթնոլորտ: Պատկերացման համար հիշենք, որ 35 սմ տրամագիծ ունեցող գլոբուսի վրա այն կունենար 2 սմ բարձրություն: Այն պարունակում է 78 տոկոս ազոտ, համարյա 21 տոկոս թթվածին, 0,031 տոկոս ածխաթթու գազ և 0,935 տոկոս չեզոք (իներտ) գազեր: Դրանցից մարդու, կենդանական և բուսական աշխարհի համար ամենակարևորն է անընդհատ շրջանառության մեջ գտնվող թթվածինը: Գտնում էին, որ թթվածնի հսկայական ծախսը հիմնականում վերականգնվում է շնորհիվ կանաչ զանգվածի, բայց վերջերս Լուսնի վրա տեղադրած ամերիկյան սարքերի օգնությամբ պարզվեց, որ ջրի գոլորշիները նույնպես օդի վերին շերտերում, արևի ազդեցության շնորհիվ տարրալուծվում են և ազատված թթվածինը իջնում է մթնոլորտի ներքին շերտերը: Երկրագնդի 16 կմ ուսումնասիրված կեղևի կեսից ավելին և համաշխարհային օվկիանոսի 89 տոկոսը նույնպես թթվածին է:

Օդը մանրէներին անհրաժեշտ սնող նյութեր չի պարունակում, բայց նրանք, ընկնելով այդ միջավայրը, կարող են երկար ժամանակ մնալ և ախտավորել մարդկանց շնչառական ուղիները: Քաղաքների, առանձնապես գետերին մոտ գտնվող օդը հսկայական քանակով մանրէներ է պարունակում:

Օդը մանրէներով վարակվում է փոշու միջոցով: Բարեբախտաբար, օդը մաքրվում է շնորհիվ տեղումների. անձրևաջուրն ու ձյան փաթիլները լուծում են իրենց մեջ և իրենց հետ իջեցնում են շատ վնասակար նյութեր, ինչպես և հազարավոր մանրէներ: Այժմ մեր երկրում ծավալված է պայքար արտաքին միջավայրի մաքրության պահպանման համար, որի հիմնական օղակներից մեկն էլ մեզ շրջապատող մթնոլորտի մաքրության պահպանումն է:

ՎԱՐԴԱՆ ԽԱՉՈՅԱՆ

Միլիոնատերն ուրախ վերադարձավ տուն:

— Պատահում է, չէ՞, այսպիսի հաջողություն,— պատմեց նա տնեցիներին,— զուր չեն ասում, որ փողը գնում է փող ունեցողի մոտ: Ահա, ինձ հետ էլ նման բան կատարվեց: Եվ այն էլ այնպես անսպասելի, ասես, երկնքից ընկավ... Ճանապարհին ինձ հանդիպեց ոչնչով աչքի չընկնող մի մարդ: Մենք ծանոթացանք, և մեր զրույցի վերջում նա առաջարկեց խիստ գայթակղիչ և ձեռնտու մի գործարք, որին միայն խենթը կարող էր չհամաձայնել...

— Այսպիսի պայման կապենք,— ասաց,— ես քեզ մի ամբողջ ամիս ամեն օր կբերեմ 100 հազարական ռուբ. փող: Հասկանալի է՝ ոչ ձրի, սակայն վարձը չնչին է...

Հարուստը երջանիկ քրքջալով շարունակեց.

— Ըստ պայմանի, առաջին օրը ես պիտի վճարեմ, ծիծաղելի է անգամ ասելը, ընդամենը... 1 կոպեկ:

Ականջներիս չհավատացի...

— Մի կոպե՞կ,— հարցնում եմ:

— Մեկ կոպեկ,— հաստատում է նա:— Երկրորդ հարյուր հազարի դիմաց կտաս 2 կոպեկ:

— Իսկ հետո՞:

— Հետո, երրորդ հարյուր հազարին՝ 4 կոպեկ, չորրորդին՝ 8 կոպեկ, հինգերորդին 16 կոպեկ: Եվ այսպես, յուրաքանչյուր օրը՝ նախորդի համեմատ երկու անգամ ավելի...

Ամսվա վերջին՝ 30-րդ օրը հարուստը ստացավ վերջին հարյուր հազարը, «երկնքից թափված» 3 միլիոն ռուբլին: Իսկ ինչքա՞ն վճարեց նա անծանոթին: Կարո՞ղ եք ասել, թե ում համար էր ձեռնտու այս գործարքը, որը սկսվեց... 1 կոպեկից:




Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

ՊԻՈՆԵՐ
№ 7
ԺԱՄԱՆՑԻ
ՊԱՏԱՍԽԱՆԸ

| | | | |
|---|---|---|---|
| 5 | 25 | 3 | 31 |
| 11 | 23 | 13 | 17 |
| 29 | 1 | 27 | 7 |
| 19 | 15 | 21 | 9 |




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց № 15,
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96, 56-43-38,

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ. ԻՆԴԵՔՍ՝ 77806



Գլխավոր խմբագիր՝ **ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ**

Խմբագրական կոլեգիա՝ ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. (պատ. քարտուղար)
Գեղ. խմբագիր՝ Մ. ՔԵՉՕՂԼՅԱՆ, սրբագրիչ՝ Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

*Հանձնվում է արտադրության 8.06. 83 թ.։ Ստորագրված է տպագրության 11.08. 1983 թ.։ ՎՖ 12243, Թուղթ օֆսեթ, 70×100 1/16, Տառատեսակ՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն. 2,92 պայմ. մամ., 3,0 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 69562։ Պատ. 1680։ Գինը՝ 15 կ.։*

Сдано в набор 8.06 83 г. Подписано к печати 11.08 1983 г. Формату 70×100 1/16. ВФ 12243 Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 9,92 усл. печ. листа. 3,0 уч.-изд. листа. Тираж 69562 Заказ 16.80 Цена 15 коп